# ՄԵՐ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մենք չգիտեինք, որ նրա անունը Ֆյոդոր էր, հայրանունն՝ Իվանովիչ: Միացրել էինք անուն-հայրանունը և արտասանում էինք որպես մի անուն՝ Ֆյոդրիվանիչ: Նա մեզ ոչինչ չէր ասում, չէր ուղղում մեր սխալը: Եվ մինչև հիմա էլ, երբ հանդիպում ենք դասարանցիներով, հիշում ենք նրան, հիշում, Ֆյոդըրիվանիչ ենք ասում:

Ֆյոդրիվանիչը հայ էր, ռուս գրականություն էր ավանդում: Նա նման էր Դոն Կիխոտին՝ չոր, երկարահասակ, արծվաքիթ, նեղ, սուր մորուք ուներ և չափազանց բարի, երազկոտ աչքեր: Իսկ երբ ամբիոն էր բարձրանում, տարածում չոր ձեռքերը, ոտքերը լայն դնում և արտասանում, մենք մոռանում էինք, որ նստած ենք աշակերտական նըստարանին, մոռանում էինք, որ թյուրքը մոտենում է հին մայրաքաղաքին: Չէինք լսում ո՛չ թնդանոթների որոտը և ո՛չ էլ ռազմաճակատ մեկնողների երգի թնդյունը: Արհավիրք էր մեր շուրջը, սարսափ ու մահ: Ֆյոդրիվանիչը ծածկում էր դասարանի դռները, գրավում մեր ուշադրությունը և այն ժամանակ միայն սկսում էր արտասանել.

Ուշ աշուն է, թռչուններն չվել են,
Անտառը մերկացել, դաշտերն ամայացել են...

Քանի՞ ժամ էր տևում դասը՝ չգիտեինք: Ուսուցիչներին ռազմաճակատ էին տարել, բարձր դասարանցիները գնացել էին իրենց ուսուցիչների հետ: Մնացել էինք մենք և մեր ծերունի ուսուցիչը՝ Ֆյոդրիվանիչը:

— Կրկնենք այսօրվա դասը,— ասում էր նա ռուսերեն, ձեռքը պարզում էր և որևէ մեկին կանչում ամբիոնի մոտ.— Ձեր անունը, ազգանունը և հայրանունը,— հարցնում էր նա:

Աշակերտը պատասխանում էր:

— Ծննդյան թիվը, տեղը:

Պատասխանում էր:

— Ազգությունը, կրոնը:

Բոլորս էլ պատասխանում էինք ռուսերենով:

Իբրև պարտադիր դաս, ամեն օր, երեք-չորս անգամ կրկնում էինք նույն բանը: Մենք չէինք հասկանում, թե ինչու համար էր նա այդ անում: Չէինք հասկանում, բայց ուրախ էինք, որովհետև նա ամեն անգամ բաց էր անում դասամատյանը և «հինգ» էր նշանակում մեր անունների դիմաց: Մենք շատ էինք սերտել այդ դասը, որը նա կոչում էր «Ո՞վ ես դու»: Եվ ուրախ էր մեր ուսուցիչը, որ չենք մոռանում մեր դասը, չենք խառնում:

Լինում էին այնպիսի պահեր, երբ նա բարձրա-

ՆՈՅԵՄԲԵՐ
№ 11 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՄԵՐ ՈՒՍՈՒՑԻՉԸ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

նում էր ամբիոն և երկար, շատ երկար նայում էր մեզ: Նայում էր այնպես, որ ասես ուզում էր յուրաքանչյուրիս դեմքը քանդակել իր հիշողության մեջ, ամրացնել, պահել: Նրա գունատ դեմքը, ոսկրացած այտերը երբեմն ժպտում էին, երբեմն էլ անշարժանում՝ քարանում: Մենք փոքր էինք, չէինք հասկանում մեր ուսուցչին: Լսում էինք նրա խուլ ձայնը, որ կարծես կարասի միջից էր գալիս, տեսնում նրա անհանգստությունը, բայց տագնապը չէինք զգում: Նա պահում էր մեզնից իր սիրտը, խնայում էր մերը:

— Դուք հայ եք,— ասում էր նա, երբ տագնապըն ահագնանում էր սրտում,— ուր էլ որ տանեն ձեզ՝ հայ եք: Չմոռանաք այս դպրոցը, չմոռանաք այս հին մայրաքաղաքը, չմոռանաք մեր դասը՝ «Ո՞վ ես դու»:

Մենք ոչինչ չմոռացանք: Մինչև հիմա էլ դեռ չենք մոռացել այն թախծոտ օրը, երբ երկու ձիավոր մտան դպրոցի բակը: Նրանցից մեկը կանչեց Ֆյոդրիվանիչին.

— Գնանք, վարժապետ:

Ֆյոդրիվանիչը մոտեցավ մեզ: Մենք խաղում էինք: Նրա ձեռքերը դողում էին.

— Չմոռանաք մեր դասը: Ձեր անուն ազգանունը:

Մենք խմբով պատասխանեցինք:

— Ծննդյան թիվը, տեղը:

Պատասխանեցինք:

— Ազգությունը, կրոնը:

— Հա՛յ ենք, հա՛յ ենք...

— Չմոռանա՛ք այս դասը: Ամեն օր դպրոց կգաք, դուռը չփակեք:

Նա գրկեց բոլորիս: Ես զգում էի նրա մետաքսի նման փափուկ մորուքի հպումը և թաց այտերի խոնավությունը:

Տարան Ֆյոդրիվանիչին: Մենք նրան տեսանք վերջին անգամ ռազմաճակատ մեկնողների խմբի առաջին շարքում: Նա քայլում էր ինչպես արձան, ուսին դրած բերդանկա միփողանի հրացանը: Նա ոչինչ չուներ, բացի այդ հրացանից: Մենք վազում էինք շարքերի հետ ու ճչում.

— Ֆյոդրիվանի՜չ, Ֆյոդրիվանի՜չ...

Նա մեզ չէր նայում, նա ոչ ոքի չէր նայում: Նա նայում էր հեռուն, հորիզոնին, որտեղ ոռնում էին թնդանոթները: Նա քայլում էր ինչպես քարե հուշարձան՝ վեր ցցած մորուքով: Նա մի քայլ առաջ էր անցել շարքից: Մեզ թվում էր, թե նա ոչինչ չէր տեսնում, ոչինչ չէր լսում: Գնում էր Ֆյոդրիվանիչը դեպի Մասիս լեռը, գնում էր Արաքսն անցնելու, մեր սիրելի, մեր հին ուսուցիչը:

Անձրև էր, աշուն: Թախծոտ ու մռայլ օրեր: Ամեն օր դպրոց էինք գալիս: Ամեն օր նստում էինք նստարաններին, կրկնում Ֆյոդրիվանիչի դասը՝ «Ո՞վ ես դու»: Իսկ երեկոյան, երբ արևն իջնում էր մայրամուտ, խմբով գնում էինք «Իգդիրա շոշը», կանգնում ճամփի եզրին՝ սայլերը դիմավորելու: Ամեն երեկո սայլերը վիրավորներ և դիակներ էին տեղափոխում ռազմաճակատից: Մենք փնտրում էինք մեր ուսուցչին: Նա դեռ չկար սայլերի վրա: Մի օր էլ, երբ դպրոց եկանք, մեզ կանգնեցրին զինված մարդիկ.

— Տու՛ն գնացեք, դպրոցը փակ է:

Դպրոցում ձիեր էին կապել: Այդ օրվանից հետո, առավոտից-երեկո մնում էինք «Իգդիրա շոշի» վրա՝ մեր ուսուցչին տեսնելու հույսով:

Ժամանակն անցավ: Աշնան անձրևները ձյունի փոխվեցին: Թնդանոթները լռեցին: Սև, ոսկրացած մարդիկ խումբ-խումբ վերադառնում էին ռազմաճակատից: Ճանապարհի եզրերին ընկած էին հրացաններ, փամփուշտներ, նռնակներ, սատկած ձիեր, թամբեր: Դպրոցի բակը, դասարանները լիքն էին գաղթականներով: Ջարդել էին գրատախտակները, նստարանները, վառել էին ամբիոնները: Վերադառնում էին վերջին զինվորները: Ֆյոդրիվանիչը չկար: Մենք մտնում էինք լքված խրամատները, հասնում էինք Սև ջրի ափերը.

*բայց ո՛չ ոք ոչինչ չգիտեր Ֆյոդրիվանիչի մասին։*

*Մի անգամ մի վիրավոր ասաց, որ տեսել է նրան Արաքսի ափին, Ջանֆիդա գյուղում, տեսել է հասակովը մեկ կանգնած, քրքրված շորերով, ոտաբոբիկ, ձեռքին մի հին հրացան։*

*— Նա կանգնած էր չորացած ծառի նման,— շարունակեց վիրավորը,— նայում էր Արաքսի այն ափին։ Ես ճանաչեցի նրան։ «Գնանք,— ասացի,— վարժապետ, տուն գնանք»։— Նա ինձ հետ չխոսեց, ոչինչ չասաց։ «Գնամ ի՞նչ լուր տանեմ ձեր աշակերտներին, վարժապետ»։ Երբ լսեց աշակերտ բառը՝ նայեց ինձ իր բարձրությունից և ասաց.*

*— Թող տղաներն ամեն օր դպրոց գնան։ Ասացեք, որ «Ո՞վ ես դու» դասը վերջացավ, թող այլևս չկրկնեն։ Ասացեք, թող դիմավորեն ինձ «Իգդիրա շոշի» վրա։*

*Մենք ամեն օր, առավոտվանից մինչև ուշ գիշեր, սպասում էինք նրան «Իգդիրա շոշի» վրա, բայց նա չէր գալիս։*

*Եվ ահա, մի երեկո, հեռվից ուրվագծվեց մեր ուսուցչի երկար հասակը։ Թե ինչպես վազեցինք, ինչպես գիրկն ընկանք՝ ինքներս էլ չիմացանք։ Նա նստել էր ճամփի եզրին ու մանկան պես լալիս էր, լաց եղանք և մենք։ Ֆյոդրիվանիչը ո՛չ մազեր ուներ գլխին, ո՛չ էլ ճերմակ, սուր մորուքն էր մնացել։ Նա նման էր չորացած ծառի։ Ջերմ հանդիպման պահին մենք չէինք նկատել, որ տղաներից մեկը չկա։ Նա թողել էր մեզ, ինքը վազել գնացել էր դպրոց և, երբ մենք մոտեցանք դպրոցին, հանկարծ առաջվա նման նուրբ և քաղցրալուր ղողանջեց դպրոցի զանգը։ Նա դպրոց չէր կանչում աշակերտներին, չէր ազդարարում դասի սկիզբը։ Երբ մեր ուսուցիչը հոգնեց ու ծնկի իջավ, տագնապով բռնված թփրտաց զանգի լեզվակը, ճչաց, աղաղակեց...*

*Բախտավոր երեխաներ էինք մենք։ Առողջացավ մեր ուսուցիչը։ Ավարտական երեկոյին պարեց, կատակներ արեց։ Նա էլի առաջվա նման ճերմակ, հեզ մորուք ուներ, հանգիստ, անխռով աչքեր, և մենք էլ առաջվա նման Ֆյոդրիվանիչ էինք ասում նրան։*

*Հիմա մեր տարիքն այնքան է, որքան մեր ուսուցչի տարիքն էր այն ժամանակ։ Եվ հիմա մենք մեր աշակերտներին «Ո՞վ ես դու» դասեր չենք տալիս։ Նրանք գիտեն ով են իրենք։*





## ԻՆՉԵ՞Ր ԵՆՔ ՄԵՆՔ ԱՆՈՒՄ, ՄԻ ՏԵ՛Ս

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Այնպես լավ է գործարանում,
Այնքան բան կա հետաքրքիր,
Որ դու, ինչպես սիրած գրքից,
Երբեք, երբեք չես ձանձրանում։

Երբ դասատուն տարավ, Վաչե,
Մեր դասարանն այնտեղ մի օր,
Կարծես մտանք քաղաք մի նոր՝
Ամբողջովին երկաթաշեն։

Ուրիշ է կյանքն այնտեղ, ուրիշ.
Գիտե՞ս ինչքան տեսակ-տեսակ
Մենք մեքենա ու սարք տեսանք
Գաղտնիքներով հրապուրիչ։

Ջվարթ երգով կանչում են քեզ
Նրանք ամեն, ամեն տեղից.
— Հապա մի պահ մեզ մոտ եղիր,
Ինչե՞ր ենք մենք անում, մի տե՛ս։—

Գործարանն այդ հիանալի,
Որ շնչում է գիշեր-ցերեկ.
Հայրենիքին մեր անեզերք
Մի իսկական գանձ է տալիս։

Վագոններն շարան-շարան,
Ամառ լինի, թե ցուրտ ձմեռ,
Խոր ընդերքից լեռների մեր
Հանքաքար են բերում նրան։

Ո՞ւր ասես չի մտնում հերթով
Հանքաքարն այդ՝ այնտեղ հասած.
Նայում ես ու մեկ էլ տեսար,
Որ պղինձ է դարձել հետո։

Այնպես լավ է գործարանում,
Այնքան բան կա հետաքրքիր,
Որ դու, ինչպես սիրած գրքից,
Երբեք, երբեք չես ձանձրանում։

# Արագածի ողկույզը



ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

Արագած լեռան ստորոտում, Քասախ գետի աջ ափին է գտնվում հինավուրց Աշտարակ ավանը, ընկղմված պարտեզների ու խաղողի այգիների մեջ։ Շատ հին ժամանակներից, դեռևս մեզանից հազար տարի առաջ, մեր նախնիները մեծ դժվարությամբ խոր ձորից առու են հանել և նրանով կանաչեցրել իրենց ծառն ու տունկը։ Իսկ գետի ձախ ափը, որ բարձր էր շատ, դարերով մնացել էր խոպան՝ անջրդի ու անմշակ։ Քարքարոտ, արևից խանձված ու ճաքճքած հողը միշտ կարոտ է մնացել ջրի։ Ո՞վ կարող էր ժայռերը ճեղքել, ճանապարհ բացել, ջուրը հանել այդ բարձունքները, այդ դռներն ամայի, ուր միայն փուշ ու տատասկ էր աճում և օձերն ու կարիճներն էին բույն դրել։ Դժվար գործ էր այդ, շա՜տ դժվար։

Աշտարակի և շրջակա գյուղերի հողագործները, աչքերը գետի մյուս կողմը հառած, տարիներ շարունակ երազում էին այն օրվա մասին, թե երբ հնարավոր կլիներ այդ մեռած տարածությունները կենդանացնել, ծածկել խաղողի ու մրգի այգիներով։ Եվ ահա նրանց այդ փափագած օրը եկավ վերջապես։

Առաջինը դաշտ մտան ջրանցքի շինարարները իրենց հզոր մեքենաներով ու գործիքներով։ Արզնի առողջարանի մոտերքից, որտեղով հոսում է Հրազդանը, նրանք պետք է ջրանցք փորեին տասնյակ կիլոմետր երկարությամբ, ջուրը հասցնելով մինչև Արագածի փեշերին գտնվող հեռավոր Շամիրամ գյուղը։ Կառուցվող ջրանցքը հենց այդպես էլ կոչվեց՝ Արզնի-Շամիրամ։

Սկսվեց շինարարությունը... Առաջին հերթին քսան կիլոմետր պետք է փորվեր, որպեսզի ջուրը հասներ «Ջազի դղեր», «Պաղպաղներ», «Օձուտներ» կոչվող հանդամասերը։ Տասներկու հազար հեկտար խոպան էր ոռոգվելու, որ ընկած էր Աշտարակի, Օշականի, Փարաքարի ու Շահումյանի այգիների կանաչ օղակի մեջ։

Օրեր ու ամիսներ շարունակ պայթյունների որոտից թնդում էր հողը։ Խիզախ շինարարները ճեղքում էին ժայռերը, կամրջում կիրճերը, լցնում ձորակները։ Հսկա փղերի պես էքսկավատորները ջրանցքի ուղեգծի ամբողջ երկարությամբ կողք-կողքի շարված, իրենց երկար «կնճիթները» թափով խրում էին ամուր բնահողի մեջ և շերեփներով լիքը քար ու հող էին հանում։ Բուլդոզերներն ու սկրեպերները հզոր կուրծքները դեմ տված, հողը հավաքում էին, բլրակներ կազմում, իսկ եթե հարկ էր լինում, այդ դիզած հողը քշում տանում էին, լցնում խոր փոսերը։ Դաշտում անընդհատ պայթեցումներ էին կատարվում, որոնց ուրախ արձագանքում էին սարերն ու ձորերը... դումմ-դու՜մ... ջուրը գալի՜ս է...

1958 թվականի ոսկեվառ աշունն էր արդեն։ Այդ տարեթիվը երկար կմնա մարդկանց հիշողության մեջ։ Ջրանցքի հանդիսավոր բացմանը ներկա գտնվելու համար, հազարավոր աշխատավորներ էին հավաքվել Աշտարակի, Աբովյանի ու Շահումյանի շրջաններից։ Բազմաթիվ հյուրեր էին ժամանել նաև մայրաքաղաքից։ Այն պահին, երբ հյուրերից մեկը կտրեց ժապավենը, արգելակները բարձրացվեցին, և ջուրը հորձանք տալով խուժեց դեպի քարերով պապակ ու տոչորված հողը, Աշտարակի կոլտնտեսության նախագահը իրենց այգիներից բերած մրգերով լի զամբյուղը շրջեց ջրանցքի մեջ, բացականչելով.

—Թող քո տված բերքն էլ մեր այգիների պես առատ լինի ու քաղցրահամ, հայրենի հո՛ղ, հարազատ հո՛ղ։

Ուրախ երգով բացվեց գարունը հայրենի լեռնաշխարհում։ Հողի աշխատավորները պայծառ տրամադրության մեջ էին։ Նրանց մեծ բախտ էր վիճակվել։ Այն, ինչ դարերով իրենց պապերն էին երազում, այսօր արդեն դառնում էր իրականություն։

Նորաստեղծ սովխոզի մարդիկ մեծ խանդավառությամբ կպան գործի։ Գարնան առավոտի քնքուշ, երկնագույն մշուշի ծալքերի տակ դեռ

նիրհում էին Արագածն ու Արայի լեռը, երբ ընդարձակ լեռնադաշտը նորից թնդաց մեքենաների ձայնից։ Այս անգամ արդեն դաշտ էին մտել մեխանիզատորները։ Նրանք իրենց երկաթե «նըժույգներին» հեծած՝ հարձակվեցին խոպանի վրա...

Հարկավոր էր տեսնել, թե ինչպես էր քար հանող մեքենան, սուր-սուր ատամները ամուր հողի մեջ խրած, տակնուվրա անում քարերը։ Քարեր, այն էլ ի՜նչ քարեր... մեկ-երկու տոննա ժայռաբեկորներ էին դրանք, որոնք ոչ մի կերպ դուրս գալ չէին ուզում, բայց քարհանիչի ձեռքից բան չէր պրծնում։ Ցնցվում էր թե՛ մեքենան և թե՛ նրա տակի հողը։ Բարձրանում էր շարժիչի ձայնը, ասես, ուր որ է, պայթելու էր բարկությունից, բայց ահա, քիչ հետո; տեղահան էր արվում հսկայական քարը...

Այդ օրերին դասերից հետո ձորի այս կողմն էին անցնում երեխաները ու երկար ժամանակ հիացմունքով դիտում մեխանիզատորների աշխատանքը։ Նրանցից յուրաքանչյուրն իր մտքում ուզում էր լինել այդ արևավառ, ցրտից ու շոգից չվախեցող տրակտորիստների տեղը։

Երբ մեխանիզատորներն արդեն այդ հանդամասում ավարտել էին իրենց գործը և գնացել ուրիշ տեղամաս, նրանց նախապատրաստած հողում սկսվեց այգետունկը։ Առանձին-առանձին հողամասերում տնկվում էին պտղատու և խաղողի այգիներ։ Ի՜նչ խնդագին, եռուզեռով լի օրեր էին դրանք... Դաշտն իր օրում այդքան մարդ չէր տեսել։ Եկել էին տուն-տնովի, ահել ու ջահել։ Դասերից հետո էլ ուսուցիչներն էին իրենց աշակերտների հետ գալիս օգնության։ Շրջակայքը լցվել էր մարդկանց աշխույժ խոսակցության ձայներով, երգ ու ծիծաղով։ Ախր, կա՞ ավելի շնորհակալ գործ, քան այգի տնկելն է։

—Շու՛տ արեք, իմ արծիվներ, տեսեք մյուս բրիգադը ուր հասավ,—ոգևորված շտապեցնում, ձայն էր տալիս հին այգեգործ Եղիշ բիձան իր օգնական պատանիներին ու աղջիկներին, որոնք առանց այն էլ կրակի պես էին աշխատում։

Նրանք հերկած, քարերից մաքրված հողի մեջ բահերով փոսեր էին անում, իսկ ծերունի այգեգործը երկու ծունկը հողին տված, որթատունկերի արմատակալը զգուշությամբ դնում էր խոնավ փոսի մեջ և իր հաստլիկ ու կոշտացած մատներով ծածկում էր հողով։ Ապա վրա էին հասնում տղաները իրենց բահերով։ Մինչև նրանք կավարտեին գործը՝ Եղիշ բիձան արդեն անցնում էր հաջորդին։ Ծնկում էր նա ու հուզված, ասես ինքն իր համար, շշնջում.

—Տունկդ դալարի՜, կանաչ թևե՜ր փռես,—ապա տղաներին դառնալով, ծիծաղում էր.—Անցա հա՛, հասե՜ք։

Ե՛վ տնկիներն էին շատ, և՛ հողը, իսկ սովխոզի ավտոմեքենաները մի կողմից բերում էին ու բերում։ Ախր, ինչպե՞ս չբերեին։ Գարունը չի սպասում, հարկավոր է, որքան կարելի է, շատ այգիներ տնկել։ Այո, և՛ հողն է առատ, և՛ արևը, և՛ ջուրը։ Որքան շատ կանաչեն, որքան շուտ պտղավորվեն ու բերք տան, այնքան շատ առատություն կլինի, շտապել է պետք, շտապել... ու շտապում են սովխոզի մարդիկ։ Ամեն գարուն ու աշուն նրանք նոր հարյուրավոր հեկտար խաղողի ու մրգի այգիներ են տնկում։ Ոչ միայն Արայի, այլև բոլոր սովխոզներում։

Աշխատանքի ուրախությունը համակել է բոլորին։ Ոչ մի րոպե չի դադարում կատակը, աշխույժ խոսքն ու զրույցը։

—Մի ա՛յս կողմ նայիր, քեռի՛ Արամ, տես ի՜նչ



ենք անում, «Օձուտը» դարձնում ենք վարդենուտ ու խաղողի ոսկե հնձան,—ուրախ-ուրախ ձայնում է մի պատանի հողագործ, որին շատ է դուր եկել այգի տնկելու աշխատանքը։

—Հա՜, քեզ մեռնեմ, բա ո՜նց, դպրոցը կավարտես, կգաս քո սիրած այգիներում կաշխատես, իսկ հիմա լավ սովորիր, որ շատ բան իմանաս, մարդը գիտությունով է ուժեղ,—բեղի տակ ժպտալով պատասխանում է քեռի Արամը։

Քիչ հետո երևում է գլխավոր գյուղատնտեսը՝ կոշիկները մինչև ճտքերը ցեխոտած։

— Հավանու՞մ ես, ընկեր Կոստանյան,— աչքի մեկը խորամանկորեն կկոցելով հարցնում է քեռի Արամը ու սպասողաբար նայում նրան։

*Սովխոզի գյուղատնտեսը ուշադիր դիտում է շուրջը։ Ուղիղ ու հավասար ձգվում են նորատունկ այգու վազերի երկար շարքերը, որոնց սկիզբն ու վերջը չի երևում։ Թեև դրանք տարբեր մարդիկ են տնկել, բայց ոչ մեկը մյուսից չի զանազանվում։ Ե՛վ տարեց այգեգործները, և՛ երիտասարդները, բոլորը, բոլորը լավ են աշխատել, շատ լավ։ Այդ երևում է նաև գլխավոր գյուղատնտեսի դեմքի արտահայտությունից։*

* * *

*Ամառ է, հուրհրան, ոսկե ամառ։ Երևանից Աշտարակ տանող մայրուղու երկու կողմերում իրենց կանաչ թևերն են փռել խաղողի ու մրգի նորատունկ այգիները։ Գորշ անապատը փոխել է իր դեմքը։ Հողը ուրախ, կանաչ ժպիտով է նայում անցորդներին։ Էլ առաջվա պես տխուր չէ ու մռայլ։ Այգիներում կարկաչում են Արզնի-Շամիրամ ջրանցքի բերած զուլալ ջրերը, որոնք աշխատավոր մարդկանց ձեռքերով կենդանացրին մեռյալ անապատը։ Այդ ճանապարհով անցնելիս, ուշադիր նայեցեք ձեր շուրջը, իմ փոքրիկ բարեկամներ։ Դուք այդ ծովի պես փռված կանաչ այգիներում կտեսնեք երգը շուրթերին աշխատող աղջիկների ու տղաների, որոնք ջրում, փխրեցնում, քաղհանում են խաղողի այգիները, փորում են կանաչ հովանոցներ բացած տնկիների շուրջը, որ նրանք ավելի ազատ շնչեն, լավ խմեն ջուրը և խորը արմատներ գցեն հայրենի հողում։ Հազիվ երկու տարի է անցել, և տեսեք, թե ինչպես են զվարթորեն ու փարթամորեն հասակ նետում փոքրիկ ծառերն ու որթատունկերը։ Կանցնի ևս մի երկու տարի, և այդ ողջ դաշտը կդառնա մրրգաստան։ Ծառերի կանաչ տերևների միջից կժըպտան արևահամ մրգերը՝ ծիրանը, տանձն ու խնձորը, սալորն ու սերկևիլը։ Բերքառատ որթատունկերից կկախվեն ողկույզները խաղողի՝ «ոսկեհատը», «սաթենին», «նազելին», «երևանին» ու մյուս տեսակները։ Մեր երկիրը երեկվա արևավառ խոպանից տասնյակ հազարավոր տոննա խաղող ու միրգ կստանա, և ամբողջ տափաստանը մեր Սովետական Հայաստանի ծաղկուն պարտեզը կլինի։ Կլինի, որովհետև այս աշուն արդեն, որպես գրավական, որթատունկերը տվել են իրենց առաջին ողկույզները։*






*ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ*

Դուք լսե՞լ եք աղավնիների երգը...

Աղավնիներն այնպես լա՜վ են երգում:

Մեր տան դիմաց է գտնվում պրոֆեսոր Այդինյանի երկհարկանի տունը: Տան թիթեղյա ծածկի տակ աղավնիներ են ապրում: Ընդամենը երկուսն են, մեկը սպիտակ է, այնքան սպիտակ, որ պարզ օրերին նրան դժվար է նկատել, երբ ճախրում է օդում. նրա անունը Փրփրիկ է: Մյուսը կապտավուն է, գլխի և ոտների վրա առատ փետուրներ ունի. դա Փաչալուն է:

Ես, իմ մեծ քույրիկն ու աղավնիները միասին ենք արթնանում: Մենք մեր պատշգամբում կոփում ենք մարմիններս, սառը ջրով շփվում, մարզվում, իսկ նրանք երգում են:

Սուսանն շտապում է, ուզում է թեյ խմելուց հետո մի անգամ էլ աչքի անցկացնել այդ օրվա դասերը, իսկ ես չեմ շտապում. ես դպրոց պետք է գնամ ոչ թե Սուսաննայի նման ժամը ութին, այլ՝ ցերեկվա ժամը մեկին, դեռ այնքա՜ն ժամանակ կա՜: Ես կարող եմ լսել աղավնիների երգը:

Ահա Փաչալուն բարձրացնում է գլուխը, Փրփրիկը մտնում է նրա թևի տակ, ու միասին երգում են:

Ես չեմ հասկանում, թե ինչի մասին է նրանց երգը. միայն գիտեմ, որ նրանք միշտ ուրախ երգեր են երգում:

Վաղ առավոտյան նրանք երգում են ծագող արևի ոսկի շողերի, քնից արթնացող ծաղիկների ու տներից դուրս եկող երեխաների ժպտացող աչքերի մասին...

Երգում են մեղմ ու քնքուշ, խաղաղ, երջանիկ ու հանգի՜ստ-հանգի՜ստ:

Կեսօրին, երբ Փաչալուն տանից հեռացած է լինում, Փրփրիկը կարոտի երգեր է երգում, կանչում է՝ արի, արի տուն...

Իսկ երբ ուշանում է, Փաչալուն անհանգստա-

նում է, բարձրանում է կտուրի վրա, մի քանի պտույտ գործում և իջնում է ցած։

Փրփրիկը տխրում է...

Իսկապես, երևի աշխարհում ամենավատ բանը մենակ լինելն է։

Դպրոց գնալուց առաջ, երբ դասավորում եմ պայուսակս, մի անգամ էլ եմ դուրս գալիս պատշգամբ, աղավնիներին ցտեսություն ասելու համար։

Մի օր, երբ արևը թեքվել էր մայրամուտ, լեռների հետևում թաքնված սև ամպերն իրար քաշելով, բարձրացան, բարձրացան ու ծածկեցին երկինքը։ Հետո լսվեց որոտ, և կարծես երկինքը փուլ եկավ։

Անձրև...

Քամին թույլ չէր տալիս, որ ջրի կաթիլներն հանգիստ ցած թափվեին։ Ես պատշգամբում նստած նայում էի աղավնատան կողմը։

Մենակ կանգնած էր Փրփրիկը, անհանգիստ նայում էր շուրջն ու կտցով քրքրում թևերը։

Նա տխուր էր, չկար Փաշալուն։

Եվ Փրփրիկն հանգիստ չէր կարողանում նստել իր տեղում։ Նա արդեն թրջվել էր՝ մի քանի անգամ կտուր բարձրանալով ու իջնելով։

Մենք՝ ես ու Փրփրիկն անհամբերությամբ սպասում էինք Փաշալուին։

Քամին շարունակում էր կռվել անձրևի կաթիլների հետ և, չկարողանալով հաղթել, սպառնում էր կտրատել էլեկտրական լարերը...

Ես ուշադրությամբ հետևում եմ Փրփրիկին և զգում, որ, ուր որ է, հայտնվելու է ընկերը։ Փրփրիկը նկատել էր նրան և ուրախությունից քամու ձեռքից ազատված անձրևի կաթիլի նման թռչկոտում էր օդի մեջ։

Ահա և հայտնվում է Փաշալուն, թրջված, կուչ եկած. նա ինչ-որ թույլ պտույտներ էր գործում օդում և խփվելով էլեկտրասյանը, վայր ընկնում։

Ես անմիջապես վազեցի դուրս, բայց մինչ ես կհասնեի, ընկած աղավնուն մոտեցավ Վարուժանը, վերցրեց ու վազեց ներս։

Մենք՝ ես ու Վարուժանը, ապրում ենք նույն շենքում, մեր պատշգամբները կից են։ Անմիջապես ես վազեցի նրա մոտ։

Ինչ լավ էր, որ աղավնին մնացել էր կենդանի։

—Բա՛ց թող,—ասացի ես։

—Բա՛րև ձեզ,՝ ես վաղուց աչքս գցել էի այս աղավնուն. գիտե՞ս ինչպես է «լող տալիս» օդում։

Ես սկսեցի համոզել, բայց ոչ մի կերպ չստացվեց, Վարուժանն աղավնուն բաց չթողեց։

Այդ գիշեր ես հանգիստ չքնեցի, պատմեցի Սուսաննային մենակ մնացած Փրփրիկի և գերի ընկած Փաշալուի մասին։



Սուսաննան ասաց, որ վաղն անպայման նա կխոսի մորաքույր Մանուշակի՝ Վարուժանի մայրիկի հետ և կազատի Փաշալուին։

Մյուս օրը մենք՝ ես, իմ մեծ քույրիկն ու մենակ մնացած Փրփրիկն արթնացանք միասին։

Քույրիկս ասաց, որ չի կարող վաղ առավոտյան անհանգստացնել ուրիշներին. պետք է համբերեմ, մինչև դասերը վերջացնի ու տուն գա։

—Ա՛յ, հենց որ դպրոցից վերադառնամ, առանց հաց ուտելու, առանց հանգստանալու կգնամ նրանց տուն,—խոստացավ Սուսաննան ու գնաց։

Այդ օրը Փրփրիկը չէր երգում ...Նա կանգնել էր մենակ, ձողի ծայրին, մի թևով ծածկել էր ոտքը, գլուխը թեքած նայում էր հեռուները։ Ով գիտի, գուցե ամբողջ գիշերը նա այդպես կանգնած էր լուսացրել։

Ես չկարողացա համբերել, նորից գնացի Վարուժանենց տուն։

Նա դուռը բաց անելիս ժպտաց.

— Հը՛, աղավնու համար քունդ չի՞ տարել...

Ես չպատասխանեցի և ուղիղ գնացի պատշգամբ։

—Դու պետք է բաց թողնես աղավնուն,—պնդեցի ես։

—Ո՛չ, բաց չե՛մ թողնի։

—Չէ՞ որ դա քո աղավնին չի։

—Հետո ի՞նչ, ես գիտեմ, պրոֆեսորը չի բերել այս աղավնիներին, սրանք իրենք իրենց են եկել բույն դրել նրանց պատշգամբում. պրոֆեսորի կինը՝



Մարգարիտ մորաքույրն էր ասում:

—Ի՞նչ անենք, սրանք հիմա նրանց աղավնիներն են, և բացի այդ, տեսնու՞մ ես, նա մենակ չի, նա ապրում է իր ընկերոջ հետ:

—Գիտե՛մ, աղավնիները շատ են սիրում իրենց ընկերներին, երբ մեկին պահես, մյուսն էլ կգա, ես նրան էլ կբերեմ:

—Բա որ պրոֆեսորն ու կինը վերադարձան ամառանոցի՞ց:

—Թող վերադառնան, նրանք աղավնիներ խաղացնողներ չեն, կիմանան, որ ինձ մոտ են եկել, էլ ոչինչ չեն ասի:

—Է՛, ուրեմն դու գող ես, սպասիր մայրիկդ ու հայրիկդ երեկոյան տուն գան:

—Վա՛յ, հո՛ դու քո աչքով տեսար, որ սրան գետնի վրայից վերցրի:

—Ճիշտ է, բայց դու ոչինչ չես հասկանում:

—Ի՞նչ չեմ հասկանում, օրինակ:

—Ա՛յ, պետք է հասկանաս, որ նրանք պետք է ապրեն իրենց բնի մեջ և ոչ թե քո քոսոտ վանդակում՝ առաջին, և երկրորդ՝ պետք է հասկանաս, որ նրանք հիմա շատ տխուր են և չեն երգում:

Քահ-քահ ծիծաղեց Վարուժանը:

—Աղավնիները երգու՞մ են:

—Իհա՛րկե:

—Ասում ես աղավնիները երգու՞մ են հա՞...

Նա ծիծաղում է, իսկ ես հուզմունքից չգիտեմ ինչ անեմ:

—Նրա ընկերը քեզ մոտ չի գա և վշտից կմեռնի,—հուսահատված սկսեցի համոզել:—Պետք է բաց թողնես և վե՛րջ:

Նորից շարունակում է ծիծաղել Վարուժանը:

—Աղավնիները կենդանիներ են, աղավնիները հո մարդիկ չե՞ն, որ վիշտն հասկանան:

Ես բռնել եմ Վարուժանի թևն ու ամուր ոլորում եմ:

—Պետք է բաց թողնես, եթե ոչ, այսօր ընկեր Համիկին կասեմ:

—Բաց չեմ թողնի, ում ուզում ես ասա:—Նա ուժեղ է ինձնից, քաշում է թևը:

Մենք միասին դուրս եկանք Վարուժանենց տանից: Ես տանում եմ նրան մեր պատշգամբը, որ նա տեսներ Փաշալուի ընկերոջը՝ Փրփրիկին (նրանց բույնը մեր պատշգամբից ավելի լավ է երևում):

—Լսի՛ր, լսի՛ր...

Փրփրիկը տխուր երգում էր:

Նա երգում էր մայր մտնող արևի, ուժեղ քամուց պոկված տերևների և իրենց բնի առաջ թափված Փաշալուի երկնագույն փետուրների մասին...

Նրա երգը լսեց Փաշալուն, կտցով մի քանի անգամ հարվածեց վանդակի երկաթյա լարերին ու ինքն էլ երգեց:

Այդ պահին պոկվեց տեղից Փրփրիկը և քամու արագությամբ սլացավ առաջ, իրեն գցեց Փաշալուի վանդակի առաջ, հետո բարձրացավ, գլուխը մի քանի անգամ ներս տարավ, թափահարեց:

Վանդակի դուռը բացվեց։

Վարուժանն ուզում էր դուրս վազել սենյակից, բռնել աղավնիներին, բայց մեր հետևից փակվել էր սենյակի դուռը։ Էլ ի՞նչ կարող էր անել Վարուժանը, հո երրորդ հարկից իրեն ներքև չէ՞ր գցելու։ Այժմ էլ ինքն էր խնդրում ինձ, որ բաց անեի դուռը։

Փաշալուն դուրս էր եկել վանդակից։ Նրանք երկուսով բարձրացան երկինք, միասին էին՝ առաջվա նման ուրախ, դեռ մի փոքր ավելի ուրախ։ Գլուխկոնծի էին տալիս ու բարձրանում վե՜ր-վե՜ր...

Մի պահ ինձ թվաց, թե նրանք որոշել էին հեռանալ, գնա՜լ, գնա՜լ... Բայց ոչ, նրանք սիրում են իրենց բույնը և պտույտներ գործելով իջնում էին ցած։

—Տեսա՞ր ինչպես եկավ մյուս աղավնին,—Վարուժանի ձեռքը բռնելով, ասացի ես։

Նա քաշեց ձեռքը և սրտնեղած ասաց.

—Իսկ հիմա բաց կանե՞ս դուռը։

—Այո՛։

—Կարծես ինձ դիտմամբ բերեց իրենց տուն,—քթի տակ մրթմրթաց Վարուժանը։

—Այո՛, մենք՝ ես ու աղավնիները, պայմանավորվել էինք։

—Դե՛ լավ, ինձ հետ այլևս չխոսես,—մատը շըրթունքներին քսելով՝ հեռացավ Վարուժանը։

—Ես քեզ հետ խռով եմ։

Երբ այս բոլորի մասին պատմեցի Սուսաննային, չէր հավատում, նայում էր աղավնիներին ու ժպտում։

Հաջորդ օրը վաղ առավոտյան ես ու քույրիկս նորից լսում էինք աղավնիների երգը։

Այնպես լավ են երգում աղավնիները. ափսո՜ս, որ Վարուժանը չէր ուզում հավատալ...

Նկ. ԱԻԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ



# ԽՆՁՈՐ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

1

*1173 թվականի ամառն էր, և Կոտայքի զով սարերում դեռ կակաչներ կային։ Կանաչ բլրալանջին, հենց այնտեղ, որտեղից քարքարոտ ձորակը ձգվում է մինչև Քոս-աղբյուրի բուժիչ ակունքները, անվանի քարտաշ Վարդը իր որդու՝ Վարդանիկի հետ կանգնեցնում էր իր աննման խաչքարերից մեկը։*

*Իրիկնամուտ էր, սև ու ոլորուն մի գիծ էր դարձել դեպի Գառնի տանող նեղ արահետը, և լեռնային զեփյուռն ասես սավառնակի պես արևի կարմիր ճառագայթները հավաքում էր եռամատուռ Ջրվեժ գյուղի զամբյուղանման գմբեթների վրա։ Հենց այդտեղից, ինչպես հիմա, խորախոր ձորերից ու ծաղկաշատ հովիտներից հարավ, տասը կիլոմետր հեռավորության վրա, որտեղ Երևանն էր, վերջալույսի բոցերի մեջ շողշողում էին Արարատի ադամանդափայլ գագաթները։*

*Քարտաշ Վարդը մոտ քառասուն տարեկան էր, արևից այրված դեմքով և ուսերին թափված սև, ոլորված մազերով, իսկ Վարդանիկը տասներեք-տասնչորս տարեկան, կլորադեմ մի տղա, որի աջ ըլթակին կախված կարմիր մարջանն ականջագինդը կրակի պես կայծկլտում էր վերջալույսի շողերի տակ։*

*Լինելով անվանի վարպետ, Վարդը, որ պատվերներ էր ստանում Հայաստանի հեռավոր ծայրերից, թափառումների ժամանակ ստիպված իր հետ էր վերցնում իր որբացած տղային։ Նրա շքեղ, նրբահյուս խոյակներն ու խաչքարերը ցրված էին Անիից մինչև Երևան, Կյորեսից մինչև Վաղարշապատ։ Բազմաթիվ հին ու նոր վարպետների ձեռագործերի մեջ, լիներ դա Ավանում թե Արամուսում, Գողնիում թե Հաղպատում, Սիսիանում թե Նախիջևանում, իսկապես Վարդի նման՝ տարբերվում էին նրա քանդակները, որոնց տակ թվականից հետո նա համեստորեն հիշատակում էր իր անունը՝ Վարդ։*

*Եվ ահա Ջրվեժ գյուղի կանաչ բլրալանջերից մեկի վրա իր որդու հետ կանգնեցնում էր իր աննման խաչքարերից մեկը։ Նրանք արդեն շաղախով ամրացրել էին խաչքարի սրբատաշ պատվանդանը և այժմ, քրտինքի մեջ կորած, ուս-ուսի*

# ԱՎԵՐԵՍ...

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

տված՝ պատվանդանի վրա էին կանգնեցնում վարդագույն տուֆից տաշված ծանր այդ կոթողը։

Իր գանգրահեր գլուխը ուսի հետ միասին խաչքարին հենած, նրա ծանրության տակ հևացող Վարդանիկը չիմացավ, թե ինչպես վերջալույսի տակ կրակվող ականջագինդը պոկվելով ընկավ խաչքարի տակ ու թաղվեց պատվանդանի վրա լցված դեռևս թարմ շաղախի մեջ։ Հետո, երբ կոթողն արդեն կանգնեցված էր, երբ հայր ու որդի ծանր աշխատանքից հետո նստեցին հանգստանալու ու նայում էին դեռևս լույսերի կախարդական ծովի մեջ հեռվում շողշողացող Մասիսներին, Վարդը հանկարծ նկատեց որդու այտի վրայից ծորացող արյան թարմ շիթը։ Ականջագինդը պոկվելիս բերծել էր Վարդանիկի փափուկ բլթակը։

Նրանք երկար փնտրեցին մարջանե այդ ականջագինդը, որը Վարդանիկի վաղամեռ մոր թողած միակ հիշատակն էր, և չգտան։ Կարմիր հուլունքը կորել էր անդարձ, արյան հետքեր թողնելով և սրանչելի խաչքարի վրա։

— Բան չկա, որդիս, — իր կոշտ ու շաղախոտ ձեռքով տղայի գանգուրները շոյելով՝ ասաց կորուստից հուզված վարպետը,—գործավորը ոչ միայն քրտինք թափե, այլև արյուն։ Պետի կորցնե՝ հավիտյանը գտնելու համար։ Հապա ինչքա՞ն որմնադիրներ են ընկել մեր գմբեթներից, խեղանդամվել ու մահացել. հապա քանի՞սն են ոտք ու ձեռք ջարդել կոթողներ կանգնեցնելիս... Հայրենի աշխարհը գեղեցկացնելու համար, նահատակների հիշատակը այսպիսի կոթողներով հավերժացնելու համար՝ արժե։

Որդին լուռ լսում էր հոր իմաստուն խոսքերը, սակայն նրա խոշոր աչքերի մեջ կարդացվում էր ականջագինդը կորցնելուց առաջացած թախիծը։

— Բան չկա, որդիս,—շարունակեց Վարդը,—գիտեմ, տխրում ես, որ կորավ մորդ հիշատակը, բայց մի բան պիտի իմանաս, որ այն, ինչ արինք այսօր, դարերի համար է, պատմության համար, որ ոչ ոք չի կարող ջնջել։

— Բայց ավերողներ կան,— մրմռացող բլթակի ցավը խեղդելով՝ ասաց փոքրիկը։

— Ավերում են միայն մեր թշնամիները՝ հագարացիք, սելջուկները, վերջերս Հայաստան խուժած թյուրք ցեղերը։ Չկա մի ժողովուրդ, որ ավերե իր սրբությունները,—հայացքը Մասիսներին հառած՝ վրա բերեց հայրը,— ինչու՞ ավերես, ինչո՞ւ կործանես քո սեփականը, երբ ինքդ էլ պիտի կառուցես... Հավատա, որդիս, որ չի լինի, չի գտնվի մեր հետնորդներից մեկը, որ մեր կառուցածը ավերե։ Նրանք կհիշեն և քեզ, Վարդանիկին,— ժպտալով ավելացրեց նա,—իսկ ավերողը ոչ միայն հայ,



այլև մարդ կոչվելու իրավունք չունի։ Ինչու՞ ավերես, երբ այնքան լավ է կառուցելը...

— Ինչքա՜ն գեղեցիկ է,— աչքերը հոր ձեռագործին հառելով, ականջի մրմուռն արդեն մոռացած՝ շշնջաց տղան,— միայն ափսո՜ս մայրիկի հիշատակը... Տեսնես, ո՞վ պիտի գտնի...

— Ոչինչ, որդիս,— մխիթարեց հայրը,— մենք շուտով Անի պիտի գնանք, ես այնտեղ մի լավը կգնեմ։

— Բայց մայրիկինը չի լինի...— շշնջաց տղան, և վերջալույսն ասես հենց այդ թախծալի խոսքի վրա գունատվեց ու հանգավ հեռու հորիզոնում։

Հետո արևը նորից ծագեց, նորից մայր մտավ, և այսպես... անցան դարեր...

## 2

Խաչքարի առջև, այն մամռած քարին, որի վրա դարեր առաջ նստել էին վարպետ քարտաշն ու իր որդին, հենց ամառային մի այդպիսի օր նստել էր և հինգերորդ դասարանցի պիոներ Վարդգեսը։ Պիոներ, բայց ի՞նչ պիոներ, ամոթ է ասելը։ Շատ անհանգիստ և ավերիչ ձեռք ուներ այդ Վարդգեսը։ Դպրոցում էլ նստարան չէր թողել, որի վրա փորագրած չլիներ իր անունը։ Եվ որովհետև անկարգության պատճառով անընդհատ փոխում էին նրա տեղը, եթե ոչ առաջին օրը, ապա երկրորդ, երրորդ օրը նստարանի վրա արդեն «Վարդգ»-ը կամ առնվազն «Վ»-ն կար ու կար։ Դրա համար դպրոցում նա հաճախ էր պատժվում, բայց քաղաքում արածների համար մնում էր անպատիժ։ Ո՞վ իմանար, որ նորաշեն ու գեղեցիկ շենքերի պատերին կավճով, ածուխով և կամ սև մազութով գրված «Վարդգես»-ը այդ հինգերորդ դասարանցի Վարդգեսն էր։ Կինոներում էլ դժվար թե իմացվեր, բայց Պիոներ պալատում իսկույն ևեթ բռնեցին, որովհետև եղած-չեղածը մի Վարդգես էր։

Հիմա կասեք, թե ի՞նչ գործ ուներ նա Ջրվեժում, այդ խաչքարի տակ։ Ինքնագլու՞խ էր եկել, ինչպես նա հաճախ, առանց տանը հայտնելու, կինո, ստադիոն էր գնում և կամ Զանգու էր իջնում լողանալու։

Ոչ՛, այս անգամ՝ ոչ՛։ Այս անգամ նա էքսկուրսիայի էր եկել Պիոներ պալատից մի մեծ խմբի հետ, և չպիտի մոռանալ, որ նրանց բերող երկու ավտոներից մեկի վարորդը Վարդգեսի հայրիկն էր, մի բան, որով նա ամբողջ ճանապարհին իրեն տեր ու տիրական էր համարում։ Մեկ սրան էր կսմթում, մեկ մյուսի վզի աղվամազից քաշում և, անընդհատ տեղը փոփոխելով, բոլորին անհանգստացնում։ Ճիշտ է, Երևանից դեռ հազիվ էին դուրս եկել, երբ ընկեր Բաբկենը շատ խիստ նկատողություն արեց նրան, բայց նա իսկույն մոռացավ այդ և, Ավան չհասած, մատիտի սուր ծայրով այնպես ծակեց տիեզերանավի հիանալի մոդել պատրաստող Ղևիկի ծոծրակը, որ նա ամբողջ ձայնով ծղրտաց։ Անհամություն էր, բայց ի՞նչ արած, հո կես ճանապարհին չէի՞ն իջեցնելու. մի կերպ հասան Ջրվեժ, և անցյալից մնացած հոյակապ հուշարձանների բեկորները դիտելուց հետո, այժմ խումբ-խումբ հանգստանում էին ծաղկաշատ բլրալանջին, որից հետո պիտի բարձրանային Քոռ-աղբյուրի Թթվաշ, հանքային ջրից խմելու։ Բայց քիչ առաջ, երբ նրանք դես ու դեն ընկած մարգարտածաղիկներից, հատ ու կենտ մնացած կակաչներից և անգամ մորիի նմանվող տատասկափշերից փնջեր էին կազմում, Վարդգեսի աչքն ընկավ դարեր առաջ կանգնեցված ու արդեն մամռած, մեզ ծանոթ խաչքարին։ Մեծ դժվարությամբ, համարյա չհասկանալով, նա կարդաց այդ հիանալի կոթողի հիշատակագրությունը և, ի՞նչ



ուրախություն, երբ խաչքարի տակ, ծախ անկյունում նրա աչքով ընկավ «Վարդը»։

«Այ քեզ բան,— մտածեց նա,— տես որ անվանս կեսից ավելին արդեն փորագրված է այստեղ, մնում է միայն «գես»-ը. բայց ինչո՞վ փորեմ»։

Նա երկար չմտածեց. մեկ, երկու, և արդեն հոր մեքենայի մոտ էր։ Տեսնելով, որ հայրը մյուս ավտոմեքենայի վարորդի հետ թեք է ընկել կանաչների մեջ, նա խցիկի բարձի տակից դուրս քաշեց պտուտակահանը և, քարայծի պես քարից-քար թռչելով, հասավ խաչքարին։ Մուրճի կարիք չկար. ամուր կայծքար ինչքան ասես. նա գտավ հարմար մեկը և, աչք ու ականջ դարձած, սպասում էր, որ մոտիկ գտնվողները հեռանան, որպեսզի գործի անցնի։

Ահա թե ինչի էր սպասում նա, երբ նստել էր այն մամռած քարին, որի վրա դարեր առաջ նրստած էին վարպետ Վարդն ու փոքրիկ Վարդանիկը։

Տեսնելով, որ ոչ ոք չի կարող նկատել իրեն, նա իսկույն չոքեց խաչքարի առջև և սկսեց փորագրել։ Բայց, ավա՜ղ, մի կերպ, ծուռումուռ նա հազիվ էր փորագրել «Գ»-ն և խորացնում էր «Ե»-ի պոչը, երբ հանկարծ, անսպասելիորեն կոտրվեց կոթողի ներքևի աջ անկյունը, սակայն «Վարդ»-ը մնաց...

— Թյո՛ւ,—թքեց Վարդգեսն ու, բեկորը ձեռքն առած, շուռումուռ էր տալիս, երբ հանկարծ տուֆաբեկորի տակ կպած ամուր շաղախի մեջ նկատեց մի կարմիր, փայլփլուն բան։ Սկզբում նա կարծեց, թե դա քարացած միջատ է, բայց երբ փորփրեց, իր ափի մեջ տեսավ կարմիր մարջանե այն ականջագինդը, որ դարեր առաջ իր կոթուստով այնպես թախիծ էր պատճառել փոքրիկ Վարդանիկին...

«Ա՜յ քեզ գյուտ»— ուրախացավ Վարդգեսը, գինդը զգուշորեն գրպանը դրեց և ուրախ-ուրախ վազ տվեց ընկերների հետևից։

Նա երևի այդպես մենակ էլ կկորչեր բլուրների մեջ, եթե ընկեր Բաբկենը չնկատեր նրա բացակայությունը և, դեսուդեն ընկած, չփնտրեր նրան։

Նրանք Քոս-աղբյուր հասան բավականին ուշացած, ու թեև ընկեր Բաբկենը ճամփին հանդիմանում էր նրան ինքնագլուխ կերպով խմբից հեռանալու համար, բայց Վարդգեսի համար ի՜նչ։ Նա ուրախ էր իր գտած ականջագինդով և խրատները մի ականջից ներս առնելով՝ մյուսից ճամփու էր դնում։

Այդպես էլ հասան Քոս-աղբյուր, և երբ մեր անկարգը տեսավ աղբյուրի գլխին հավաքվածներին, թեև ծարավ էլ չէր, առաջին իսկ պատահածին դեն հրելով, չոքեց ու երեսը թաղեց սառը՝ թթվահամ ջրով լի գուռի մեջ։ Բայց այստեղ նրա բանը հաջող չգնաց, որովհետև նա հազիվ էր մի



կում խմել, երբ ախոյանը նրա գլուխը թաղեց ջրի մեջ։ Դրան հետևեց տուրուդմբոցը, որին հազիվ վերջ տվին աղբյուրի մոտ գտնվող պիոներները և կռվողներին օղակած՝ տարան ընկեր Բաբկենի մոտ։

Դեռ քիչ առաջ ընկեր Բաբկենը այնպե՜ս ուրախ էր և այնքան հետաքրքիր բաներ էր պատմում, բայց ահա Վարդգեսը նորից գցեց նրա տրամադրությունը։

Ընկավ և բոլորի տրամադրությունը։

— Ընկեր Բաբկեն, շարունակեցեք ձեր պատմությունը,— խնդրեց ջոկատավար Ամալյակը,— դե՛, հո այսօր դուք էլ, մենք էլ չե՞նք կարող Վարդգեսին միանգամից կարգի բերել։

— Ո՛չ, Ամալիկ,— հոգնած ու թախծալի վրա բերեց ընկեր Բաբկենը,— ձեզ չեմ պատմի կիսատ մնացած այդ արշավի մասին, ես հիմա մի տխուր պատմություն հիշեցի, որը, հույս ունեմ, մի քիչ մտածել կտա Վարդգեսին իր արածների վրա։ Ա՛յ, ես ձեզ կպատմեմ այդ տխուր պատմությունը, որ պատահել է Ջրվեժում, դարեր առաջ։

Պիոներները հետաքրքրությունից վառվող աչքերով բոլորեցին նրան։

— Գլխավորը Վարդգեսն է, ես ուզում եմ, որ նա լավ լսի այս պատմությունը, որ պատահել է հենց ջրի վրա։ Մո՛տ նստիր, Վարդգես, մո՛տ նըստիր։

— Ասում են, Ջրվեժ անունը ճիշտ չէ, որ այն եղել է Ջրվեճ, այսինքն՝ այդ անունը առաջ է եկել ջրի համար եղած վեճից, ջրակռվից: Մենք կհավատայինք իրականությանը մոտիկ այդ ավանդությանը, եթե Ջրվեժի մասին դեռ 5-րդ դարում հիշատակած չլիներ մեր հայտնի պատմագիր Ղազար Փարպեցին:

Ջրվեժը, որ ընկած է Գեղարդի հոյակապ վանքի ճամփին, մի ժամանակ ջուրը ստանում էր Արխաշյանից: Ջրի սակավության օրերին շրջակայքի գյուղացիները հավաքվում էին ջրանցքը կարգի բերելու համար: Այդպիսի մի հավաքի ժամանակ, երաշտ մի տարի, վճռում են ջուրը առաջին հերթին տալ այն գյուղին, որը բոլորից շատ մատաղ կհասցնի Գեղարդ: Երբ իմացվեց, որ Ջրվեժը մնացած գյուղերից ավելի հեռու է ընկած Գեղարդից և ոչխարացու մատաղը ըստ պայմանի շուտ հասցնելը համարյա անկարելի է, այդ ժամանակ, ասում են, ջրվեժցի մի պատանի արագ վազքով հասնում է Գեղարդ, և հանուն իր աղքատ համագյուղացիների, ոչխարի փոխարեն դաշունահար լինելով, զոհաբերում է իրեն:

Նրա գերեզմանը այժմ գտնվում է, այ, ներքևի բլրալանջին: Դա մի սքանչելի խաչքար է, որ քանդակել է անվանի քարտաշ Վարդը: Գնանք, երեխաներ, գնանք, և ես ձեզ ցույց կտամ այդ աննման կոթողը:

Քիչ հետո պիոներների խումբը ընկեր Բաբկենի գլխավորությամբ քայլում էր դեպի մեզ ծանոթ բլուրը: Իրիկուն էր, ճիշտ այնպիսի մի մայրամուտ, ինչպես դարեր առաջ, երբ հայր ու որդի, ուս-ուսի տված, քրտինքի մեջ կորած, նահատակ պատանու շիրմի վրա էին կանգնեցնում այն սքանչելի կոթողը: Այժմ, սև ու ոլորուն գծի նմանող, դեպի Գառնի տանող նեղ արահետի փոխարեն, շողշողում է ասֆալտապատ ճանապարհը, և խորախոր ձորերից ու ծաղկաշատ հովիտներից հարավ, որտեղ Երևանն է, վերջալույսի բոցերի մեջ նորից շողշողում էին Մասիսների գագաթները: Գնում էին պիոներները երգելով, մի մասը դեռ գտնվում էր ընկեր Բաբկենի պատմածի տխուր ազդեցության տակ, սակայն ամենից ծանրը Վարդգեսի վիճակն էր:

Խղճի խայթը տանջում էր նրան: Ահա թե ում հուշարձանն էր փչացրել նա, մի դժբախտ պատանու, դարերի խորքում մնացած մի խեղճ հայրենակցի, որ դաշունահար էր արել իրեն՝ հանուն իր նման դժբախտ գյուղացիների...

## ՊԱՏԿԵՐ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Արդեն ցողն է եղյամ դառնում,
Թեթև քամին թևին առնում,
Սաղարթներն է իրար խառնում
Հանդում գյուղամերձ.
Վերջին միրգն է այգում քաղվել,
Ծեր անտառն է նոր խաղաղվել,
Մինչև ծունկն է կրկին թաղվել
Տերևների մեջ:
Դաշտին, հովտին, ձորին վառման
Պաղ հեքիաթն է պատմում ձմռան
Մեր երկնահաս, ձյունոտ լեռան
Կատարը վերջին.
Աշունն անցնում է լանջերով,
Հրապուրում շող գանձերով,
Վայրի ծառն է իր տանձերով
Դեռ սնում արջին:
Հերկած վերջին հողերը թուխ՝
Տրակտորը դառնում է գյուղ,
Եվ կանգնում ենք մենք աներկյուղ
Ձմեռվա շեմին.
Հարդաբույր է հողը շնչում,
Մուժը լեռներն է կամրջում,
Ողջ բնությունն է անրջում
Իրիկնադեմին:
Իմ շուրջն աշուն է ոսկերանգ.
Ու սրտիս մեջ վառած կրակ՝
Զողանջում է մի երազանք
Այնպես մեղմ ու պաղ.
Մի կարոտ է կարծես հնչում,
Արագիլը չկա ճահճում,
Կապույտ լեռներն աշնան մահճում
Ննջում են խաղաղ:

## ԵՐԱՄ ԵՆ ԿԱԶՄԵԼ

ՄԻՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ

Տերևներն աշնան շնչից են պոկվել,
Այնքան նման են ոսկի հավքերին,
Կռունկների պես երամ են կազմել,
Մնաս բարով են ասում անտառին:

Նրանց խաբում է թափառող քամին,
Թե՝ ձեզ կտանեմ տաքուկ աշխարհներ,
Տանում է նրանց ձորերը մթին
Եվ իր խաղերին դարձնում է ընկեր:

# ՏԻԿՆԻԿԸ ՄԱՅՐ Է ՈՒԶՈՒՄ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ունիվերմագում շատ մարդ կար: Դերենիկը կանգնած էր խաղալիքների վաճառասեղանի առաջ: Նա չէր նայում խաղալիքներին, նայում էր գործակատար կնոջը: Այդ կինը նման էր Դերենիկի մորը: Դերենիկը աչքերը չէր կարողանում հեռացնել այդ կնոջից և մտածում էր. «Երանի խաղալիքներին, շարունակ նրա մոտ են, ես էլ կուզենայի խաղալիք դառնալ, միայն թե միշտ նրա հետ լինեի»: Դերենիկն այդ իղձը հայտնեց թե չէ, սկսեց փոքրանալ, այնքան փոքրացավ, դարձավ տիկնիկի չափ: Իսկ գրպանում ունեցած մոր նկարը, մատիտը, կոճակները բոլորովին անհայտացան:

Դերենիկը չէր կարողանում ո՛չ խոսել, ո՛չ շարժվել, բայց ամեն ինչ տեսնում էր և զգում: Հոր ձեռքից բռնած՝ անցնում էր մի տղա: Նա նկատեց վաճառասեղանի առաջ ընկած անշարժ Դերենիկին և ձայն տվեց գործակատար կնոջը.

— Մո՛րաքու՛յր, ձեր տիկնիկն ընկած է գետնին:

Գործակատարը կռացավ վաճառասեղանի վրա, նկատեց տիկնիկը, ապա առաջ եկավ, վերցրեց ու վերադարձավ իր տեղը: Նա զարմացած էր. այդ տիկնիկը նման է մյուսներին, բայց և նման չէ: Գուցե խոտա՞ն է: Նա այն համեմատեց իր ունեցածների հետ, նկատեց, որ քիչ թե շատ համապատասխանում է մի տեսակի, որն արժեր երեք ռուբլի երեսուն կոպեկ: Մի պիտակի վրա այդ գինը գրեց, փակցրեց Դերենիկի կրծքին և նրան դրեց ցուցափեղկում: Դերենիկը շատ վշտացավ, ինքը գիտեր, որ մոր համար երեխան անգին է: Բայց ինքը այդ կնոջ համար արժե երեք ռուբլի երեսուն կոպեկ: Սակայն կինն ի՞նչ իմանար, որ նա Դերենիկն է ու ոչ թե մի հասարակ տիկնիկ, և որ նա կարոտում է իրեն, որովհետև ինքը նման է նրա կորցրած մայրիկին:

Ունիվերմագով մեկ հնչեց բարձրախոսի ձայնը.

## ԱՇՆԱՆ ՀԵՔԻԱԹԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Աշունը հուշում է բառերը,
Մնում է միայն գրել.
Աշունը բերել է տառերը,
Դեղնավո՞ւն, կարմի՞ր տառեր:

Խշշում են, խշշում ծառերը,
Մաշվում են, մաշվում ճանպարհ,
Աշունը գույները խառնել է,
Ներկել է անտառ ու արտ:

Տե՛ս այնտեղ խշշում են ծառերը,
Ոսկի են թափում ազատ,
Իսկական չեն այս գանձերը՝
Աշուն է, աշնան հեքիաթ:

Աշունը հուշել է հեքիաթը,
Գրել եմ ես այն, բերել,
Հեքիաթն այս չգիտե քո տատը,
Ուզու՞մ ես, կարդա դու էլ...

## ԱՇՈՒՆՆ ՈՒ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

— Աշուն, աշուն իմ հողմահար,
Տերևներով երամ-երամ
Ո՞ւր ես փախչում շփոթահար,
Ընկած ցրտի, քամու բերան:
Թե հարավ ես տանում քո չուն,
Ուշացել ես, աշուն իմ լավ.
Վաղուց-վաղուց ամեն թռչուն
Հեռացել է դեպի հարավ:
Տես, գալիս է ձմեռն արագ,
Եղյամելով ծոր ու կածան,
Դու կազատվե՞ս ձեռքից նրա,
Այ իմ նախշուն ու ոսկեծամ:—
Բայց աշունը վերջին շնչում
Խոսեց մեղմիկ մի խշշոցով.
— Երբ չվում էր ամեն թռչուն,
Կապված էի հազար գործով:
Թե փախչեի հեռու աղեր,
Ո՞վ ձեզ կտար ծով բերք ու բար,
Թե ուշացել եմ, մանուկներ,
Ուշացել եմ գործի համար:

Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

«Կորել է վեց տարեկան մի տղա, անունը՝ Դերենիկ, մազերը՝ շեկ, աչքերը շագանակագույն: Հագել է կապույտ վարտիք և ճերմակ վերնաշապիկ: Գտնողներին խնդրում են բերել նրան գրասենյակ՝ երրորդ հարկ, կոշիկի բաժնի մոտ»: Դերենիկը լսեց և մտածեց. «Քեռին ինձ փնտրում է և իզուր է փնտրում, որովհետև ո՛չ նա, ո՛չ էլ որևէ մեկը չի կարող գլխի ընկնել, որ ես տիկնիկ եմ դարձել»: Բարձրախոսը երկու անգամ ևս կրկնեց նույն հայտարարությունը: Դերենիկը տեսնում էր, որ քեռին անհանգիստ գնում-գալիս է, սրան է հարցնում, նրան է հարցնում՝ չե՞ք տեսել այսպիսի փոքր տղայի... Դերենիկը տեսնում էր, բայց ո՛չ կարողանում էր ձայն տալ, ո՛չ էլ շարժվել: Ի վերջո, քեռին հուսահատվեց և հեռացավ:

Մութն ընկավ: Ջահերը վառվեցին: Հնչեց զանգը մեկ, երկու, երեք անգամ: Հաճախորդները նվազում էին: Գործակատար մայրիկը խալաթը հանեց և գնաց. նույնիսկ մեկ անգամ չընայեց Դերենիկի կողմը: Ամենքը հեռացան, և Դերենիկը մնաց բոլորովին մենակ: Չնայած շուրջը շատ խաղալիքներ կային, բայց նա չէր ուրախանում, որովհետև չէր կարող խաղալ դրանց հետ: Նա շատ տխրեց, ձանձրացավ, ի վերջո քնեց:

Առավոտյան Դերենիկն արթնացավ հաճախորդների աղմուկից: Նա շատ ուրախացավ, երբ գործակատար մայրիկը եկավ, կանգնեց վաճառասեղանի հետևը, շտկեց, վերադասավորեց խաղալիքները. նույնիսկ ուղղեց իր՝ Դերենիկի հագի շորը:

Օրվա կեսը կլիներ, երբ մի պառավ իր թոռան հետ եկավ խաղալիք գնելու: Աղջիկը մեկ այս էր ուզում, մեկ այն, և գործակատարը, ջղայնությունը զսպելով, տիկնիկները տալիս ու ետ էր վերցնում: Վերջապես, աղջիկը Դերենիկին ուզեց: Գործակատարը տիկնիկ-Դերենիկը տվեց նրան և ասաց.

— Սա իմ ունեցած ամենալավ տիկնիկն է:

Գործակատար մայրիկի գովեստը դուր եկավ Դերենիկին, բայց տղան միաժամանակ տխրեց՝ զգալով, որ պիտի բաժանվի նրանից: Եվ իրոք, աղջիկը հավանեց Դերենիկին:

Այդպես պատահեց, որ Դերենիկը կորցրեց գործակատար մայրիկին, բայց գտավ մի ամբողջ ընտանիք, որի մեջ կար մի տատ, մի հայր, մի մայր և մի... Շուշան. այդպես էր աղջկա անունը: Դերենիկը ամենից շատ տեսնում էր տատին և, իհարկե, Շուշանին: Աղջիկը մի անգամ գրկում ամուր սեղմեց Դերենիկին և ասաց.



— Տատի, սա իմ բալիկն է: Ես նրա մայրիկն եմ:

Դերենիկն այնքան հուզվեց, որ քիչ էր մնում լաց լինի: Տատը հարցրեց.

— Անունն ի՞նչ ես դրել:

— Գևորգ:

Դերենիկն ուզում էր ասել, որ ինքն արդեն անուն ունի: Բայց ինչպե՞ս ասեր:

Շուշանը հաճախ գրկում էր Գևորգ-Դերենիկին, օրոր էր ասում, մաքրում-ուղղում էր վրայի շորերը, երբեմն հեքիաթ էր պատմում նրան, խրատում, երբեմն էլ անտեղի պատժում էր: Իհարկե, անտեղի, քանի որ խեղճ Դերենիկը խոսել կամ շարժվել կարողանու՞մ էր, որ չարություն էլ անի: Ճիշտ է, նա չէր ճաշում, բայց դե տատը քանի՜ անգամ է բացատրել, որ տիկնիկները չեն ուտում: Դերենիկը գնալով ավելի ու ավելի էր կապվում Շուշանին, տխրում էր, երբ նա արջուկով կամ շնիկով էր զբաղվում, ու երբեք, երբեք չէր կշտանում այդ փոքրիկ մայրիկի անուշ խոսքերից: Եվ եթե նույնիսկ կարողանար շարժվել կամ խոսել՝ ինքը ամենևին չէր վշտացնի, չէր ջղայնացնի նրան:

Բայց ժամանակն անցնում էր, օրը գիշեր էր դառնում, գիշերը՝ առավոտ, Շուշանն էլ մեծանում էր և գնալով ավելի քիչ էր զբաղվում խաղալիքներով և իր փոքրիկ Գևորգ-Դերենիկով: Նա դարձել էր դպրոցական: Դերենիկը շատ էր տխրում առանց Շուշանի: Ինչքա՜ն վատ է տիկնիկ լինելը. ուզեն՝ քեզ հետ կխաղան, կխոսեն, կգրկեն, չեն ուզի՝ կմնաս մենակ ու լքված: Իսկ ինքդ ոչինչ չես կարող անել. ո՛չ խաղալ, ո՛չ շարժվել, ո՛չ էլ խոսել մարդավարի: «Եթե նորից դառնամ իսկական երեխա,— մտածում էր Դերենիկը,— կլինեմ առույգ և աշխույժ: Ոչ մի րոպե իզուր չեմ կորցնի, կլինեմ Շուշանի պես, որը սիրում է կարդալ գունավոր, նկարազարդ գրքեր»:

Մի անգամ Դերենիկը լսեց, թե ինչպես տատն ասաց.

— Շուշան ջան, գիրքը ֆարազատ բարեկամ է, նույնքան լավ, որքան մայրիկը: Երբ տխուր ես, քեզ սփոփում է ու միշտ լավ-լավ հեքիաթներ է պատմում...

Դերենիկը զարմացավ, որ հառաչանք դուրս թռավ իր բերանից:

Տատն էլ զարմացավ և Շուշանին հարցրեց.

— Այդ ո՞վ էր, որ տխուր հառաչեց:

Շուշանը շրջվեց ու նայեց. սենյակում ոչ ոք չկար, իհարկե, բացի Դերենիկից, որին սակայն տիկնիկ էին համարում:

Երբ տանը բոլորը քնեցին, Դերենիկը երկար մտածեց իր հառաչանքի մասին: Զլինի՞ թե ինքը նորից կարող է լինել սովորական երեխա: Ախ, ինչքան կուզենար Շուշանի պես դառնալ դպրոցական և կարդալ գրքեր, որոնք մայրիկի պես կփայփայեն ու կմխիթարեն:

Եվ Դերենիկը մտովի երեք անգամ կրկնեց իր սրտի իղձը. «Դառնամ երեխա՝ դպրոցական, որպեսզի գտնեմ կարդամ գիրք-մայրիկին»: Եվ նա իրոք մեծացավ, մեծացավ ու մի քիչ ավելի խոշոր երեխա դարձավ, քան այն օրն էր, երբ դարձավ տիկնիկ: Դերենիկը մոտեցավ քնած Շուշանին: Ինքը սիրում էր նրան՝ մի քիչ այնպես, ինչպես մայրիկին: Քանի՜-քանի՜ օրեր, ամիսներ անցկացրին միասին, խաղացին, ուրախացան: Ինքը երբեք չի մոռանա Շուշանին և երբ դառնա դպրոցական, նրան կուղարկի սիրուն բացիկներ, որոնց վրա ինքը իր ձեռքով գրած կլինի «Իմ Շուշանին»: Դերենիկը համբուրեց նրա այտը, շոյեց մազերը, ապա նայեց երկար ու շնորհակալ: Նա համբուրեց և տատին, որն այնպես լավ խոսեց գրքի մասին: Հետո թաքուն դուրս եկավ Շուշանենց տնից:

Հաջորդ օրը Շուշանը և նրա տատը, իհարկե, զարմացան, երբ նկատեցին, որ տիկնիկը անհետացել է:

Դերենիկը շուտով գտավ իր քեռուն, նրան պատմեց իր արկածների մասին, ապա ասաց.

— Գիրք եմ ուզում, որ մայրիկի պես պատմի լավ-լավ հեքիաթներ:



# ՇՈՏԼԱՆԴԻԱՅԻ ԽԱՂԱԼԻՔՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԸ

*ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ*



Դուք տեսած չեք լինի այն խաղալիքները, որոնց մասին ուզում եմ պատմել: Դրանցից խանութներում չկան: Այդ խաղալիքները մենք էինք պատրաստում: Պատերազմ էր, ծանր օրեր էին... Իսկ մենք փոքր էինք և ուզում էինք խաղալ: Եվ պատրաստում էինք ինքներս: Վերցնում էինք, օրինակ՝ կոճակ կամ մի հինգկոպեկանոց, լաթի կտորով ծածկում այն և ամրացնում մի երկար փայտի ծայրին: Հետո փալասով փաթաթում էինք ու կոճակի վրա մատիտով նկարում՝ աչքեր, հոնքեր, քիթ և բերան: Ու ստացվում էր տիկնիկ: Եթե հիմա ձեզ տան այդպիսի մի տիկնիկ, դուք կծիծաղեք ու դեն կնետեք այն, որովհետև դուք այնքա՜ն լավ տիկնիկներ ունեք... Իսկ մենք ո՛չ ծիծաղում էինք, ո՛չ էլ դեն նետում: Մենք սիրում էինք մեր պատրաստած տիկնիկներին, քնեցնում էինք մեզ հետ, երգեր էինք ասում նրանց համար: Ուրիշ, ավելի լավ խաղալիքներ չկային:

Կամ՝ գնդակը: Մենք էլ էինք սիրում ֆուտբոլ խաղալ: Բայց չունեինք անգամ ռետինե մի փոքրիկ գնդակ, էլ չեմ խոսում ֆուտբոլի իսկական, մեծ գնդակի մասին: Ուրեմն ի՞նչ անել: Հին գուլպայի մեջ լցնում էինք փալասներ ու բերանը կապում: Ահա և քեզ գնդակ: Ճիշտ է, նա չէր ցատկում և ուղիղ չէր թռչում, բայց և այնպես գնդակ էր, որով կարելի էր ֆուտբոլ խաղալ:

Երբեմն էլ խաղի ամենալարված ժամանակ հանկարծ գուլպան քանդվում էր և լաթի կտորները ցրվում էին այս ու այն կողմ:

— Դադա՜ր,– բղավում էինք մենք,—գնդակը քանդվել է: — Ու համբերությամբ կրկին փաթաթում էինք այն:

Ահա թե ինչպիսին էին մեր խաղալիքները:

Դա, իհարկե, երկար չտևեց: Ավարտվեց պատերազմը, և խանութները խաղալիքներով լցվեցին: Մեր փոքրիկ եղբայրներն ու քույրերը իսկական խաղալիքներ ունեցան, այնպիսիները, որ հիմա բոլորդ էլ ունեք: Դե, դուք հիմա ունեք շատ ավելի՛ լավերը՝ և՛ ավտոմեքենաներ, և՛ հեծանիվներ, և՛ բազմատեսակ գնդակներ, և զարմանալի, շարժվող գնացք ու մեքենաներ, և՛ տիկնիկներ, որ այս կամ այն կողմ են շրջում աչքերն ու «մամա՜» կանչում:

Եվ, եթե կուզեք իմանալ, ես ձեզ չէի էլ պատմի մեր ինքնաշեն խաղալիքների մասին, եթե վերջերս չայցելեի մի խաղալիքների ցուցահանդես: Դա Էդինբուրգումն էր, Շոտլանդիայի մայրաքաղաքում: Մենք՝ սովետական տաս երիտասարդներս, տուրիստական ուղևորության էինք մեկնել Շոտլանդիա: Դա մի երկիր է, որ գտնվում է անգլիական մայր ցամաքի հյուսիսում: Նրա բնությունը շատ ու շատ նման է մեր Հայաստանին՝ իր հիանալի լեռներով,



անտառներով ու մարգագետիններով։ Թեև փոքրիկ, բայց հիանալի քաղաք է նաև Շոտլանդիայի մայրաքաղաքը՝ Էդինբուրգը։ Երկու օր շրջում էինք այդ քաղաքում, գնում համալսարան, եկեղեցի, հինավուրց ամրոցները, պալատները, մտնում խանութները... Ապրանքներ շատ կային։ Շատ կային նաև բազմաթիվ ու բազմատեսակ գեղեցիկ խաղալիքներ։ Բայց տարօրինակ էր՝ գնորդներ համարյա չկային։ Մոտ կես ժամ շրջում էինք մի մեծ խանութում և ոչ մի երեխայի չհանդիպեցինք։

Երբ հյուրանոց վերադարձանք, այդ առթիվ մեր զարմանքը հայտնեցինք հյուրանոցի աշխատող, ծերունի պարոն Թոմին։ Նա ժպտաց ու ասաց.

— Դուք հարուստների խանութում եք եղել, այնտեղ խաղալիքները շատ թանկ արժեն։ Հարուստ ծնողները գալիս ու իրենք են խաղալիքներ ընտրում իրենց երեխաների համար։ Իսկ շա՜տ-շա՜տ բանվորների ու ծառայողների երեխաներ կամ գնումներ են կատարում ծայրամասերի հասարակ խանութներից, որտեղ ապրանքները որոշ չափով էժան են, կամ էլ իրենք են իրենց համար խաղալիքներ պատրաստում։ Երկու օր առաջ իմ եղբոր փոքրիկ տղան պահածոյի տուփից փորձում էր սայլակ պատրաստել, չէր ստացվում, դրա համար էլ լալիս էր...

Մենք շատ զարմացանք։ Հիմա էլ հո պատերազմ չէ՞, որ երեխաները ստիպված լինեն նման խաղալիքներ սարքել։ Մի՞թե չկան գոնե սովորական, էժանագին խաղալիքներ։

— Ամենաէժանը ինքնաշենն է,—ասաց պարոն Թոմն ու ավելացրեց.—Ես ձեզ հրավիրում եմ Էդինբուրգի մանկական խաղալիքների ցուցահանդեսը։ Գնա՛նք, և դուք կտեսնեք, թե ինչպիսի խաղալիքներ կան հիմա Շոտլանդիայում։

Էդինբուրգի հարուստ մի քաղաքացի, զվարճանալու և, իհարկե, օգուտ քաղելու նպատակով, հավաքել է Շոտլանդիայում այժմ գոյություն ունեցող բոլոր խաղալիքների նմուշները և ցուցահանդես կազմակերպել չորս հարկանի մի շենքում։

Առաջին հարկի մի սրահը կոչվում է «Աղքատների խաղալիքներ»։ Հենց այդտեղ էլ ես տեսա այնպիսի խաղալիքներ, որոնք ինձ հիշեցրին պատերազմի ժամանակվա մեր փայտե տիկնիկներն ու շորե գնդակները, որոնք վաղուց մեզ մոտ չկան և որոնք այսօր էլ կան Շոտլանդիայում։

Ահա մի տիկնիկ։ Փալասներից է սարքված, բայց գլխի փոխարեն դրված է ոչ թե կոճակ կամ պղնձե դրամ, այլ զինվորական երկարաճիտ կոշիկի ռետինե մի կրունկ։ Նրա կողքին ցախավելից ձեռքերը տարածել է մի այլ տիկնիկ։ Իսկ այս խաղալիքը սարքող մանուկը որոշել է պատկերել հին ասպետին։ Բայց ինչի՞ց պատրաստի նրա պողպատե զրահը, ինչի՞ց պատրաստի նիզակն ու վահանը... Եվ մանուկը ստիպված ասպետի զրահը պատրաստել է ջրիմուռներից, նիզակի փոխարեն ձեռքին ամրացրել է մի մեծ մեխ, իսկ վահանի փոխարեն լանջին է կապել պահածոյի տուփի կափարիչը։

«Աղքատների խաղալիքներ» սրահի ուղիղ դիմաց գտնվում է «Հարուստների խաղալիքներ» սրահը։ Այո, սրանք երեխաները չեն պատրաստել։ Ամենուրեք շարժվող մեքենաներ են՝ ավտոներ, մոտոցիկլետներ, կենդանիներ, քայլող զինվորներ, ժպտացող տիկնիկներ, խոշոր, շարժուն աչքերով։ Այստեղ արդեն տիկնիկներն իրենց տերերի ծնողներին են նման։ Ահա մի կապիտալիստ հաստ սիգար է ծխում, և ծուխը իսկապես բարձրանում է վեր, ահա մի կալվածատեր մտրակով ծեծում է սևամորթ ստրուկին, ահա մեկ ուրիշը դանդաղորեն բարձրացնում է ձեռքը, կրակում ատրճանակից, և բոցը ելնում է փողից։ Այսպիսի խաղալիքներով են զվարճանում հարուստների երեխաները։ Բայց սրանք էլ նրանց ծնողներին չեն բավարարում, և նրանք իրենց երեխաների համար պատվիրում են ավելի սարսափելի խաղալիքներ։ Ահա դրանցից մեկը. դա բավականին մեծ մի տնակ է, որ դրված է սրահի կենտրոնում և աշխատեցնելու համար հարկավոր է մանր պղնձեդրամ նետել տնակի վերևում գտնվող անցքից։

Ահա դրամը նետված է։ Միանգամից լուսավորվում են ամրոցի պատուհանները։ Եկեղեցու զանգի ղողանջների տակ բացվում են ամրոցի դարբասները և երևում է գիլյոտինը (մի գործիք, որի վրա Ֆրանսիայում գլխատում էին մահապարտներին)։ Գիլյոտինի վրա պառկած է մահապարտը՝ գլուխը դանակի տակ, իսկ աջ և ձախ կողմերում անշարժ ու մռայլ կանգնած են զինվորները։ Տերտերը հանդիսավորությամբ բարձրացնում ու իջեցնում է ավետարանը, աղոթք է կարդում։ Եվ երբ ավետարանը իջեցնում է երրորդ անգամ, լսվում է մի ճայթյուն և գիլյոտինի դանակը ընկնում է ցած։ Մահապարտի գլուխը կտրվում է ու գլորվում զամբյուղի մեջ։

Դա հարուստ շոտլանդացիների երեխաների ամենազվարճալի խաղալիքն է։ Երբ դուրս եկանք ցուցահանդեսից, բոլորիս տրամադրությունն էլ ընկած էր։

— Ահա մեր Շոտլանդիայի խաղալիքների աշխարհը,—մտախոհ ու տխուր ասաց պարոն Թոմը,—կարծես թե չի տարբերվում իրական աշխարհից, այնպես չէ՞...

Այդպես է։ Այնտեղ խաղալիքներն էլ են բաժանված երկու խմբի՝ աղքատների ու հարուստների։ Ու կանգնած են նրանք նույն շենքի տարբեր սրահներում՝ ռետինե կրունկից սարքված գլխով, փալասով փաթաթված տիկնիկը և գնդակ-գուլպան, էլեկտրական գիլյոտինը և սիգար ծխող կապիտալիստը։

Սա է Շոտլանդիայի խաղալիքների աշխարհը։

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ*



# ՏԻԵԶԵՐՔԻՑ ՀՅՈՒՐԸ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԷԴԻԿ ՋԱՔԱՐՅԱՆԻ

Արդեն մեկ ամիս է անցել, բայց մենք դեռ վիճում ենք: Մեծերն ասում են, թե մենք հիմար բանի վրա ենք վիճում, իսկ երբ շատ են ծանծրանում, հանդիսավորությամբ հայտարարում են, թե երկուսով էլ, այսինքն՝ թե՛ ես և թե՛ Լևոնը մեղավոր ենք: Նման հայտարարությունից հետո, ճիշտ է, մի քանի ժամով հանդարտվում ենք, արտաքուստ՝ նույնիսկ հաշտվում, բայց մեկ էլ Լևոնը. թե՝

— Ասում եմ, մեղավորը դու ես:

Մի խոսքով, սկսում ենք վիճել. վեճն էլ փոխում է կռվի: Այսինքն մենք հո իսկականից ե՞նք կռվում, ուզում եմ ասել՝ չենք կռվում պար քիթ ջարդելու մտադրությամբ: Պարզապես եր ճշմարտությունները փորձում ենք բղավելով պացուցել, և այնպես է ստացվում, որ չենք հասյանում իրար և լսողներն էլ, հատկապես մեծերը, օրորում են գլուխներն ու ասում. «Էլի կռիվը սկսեցին» կամ՝ «Խելքները մի հիմարություն է մտել՝ չեն կարողանում դուրս հանել»: Իհարկե, ո՛չ առաջին և ո՛չ էլ երկրորդ կարծիքը իրականությանը չեն համապատասխանում: Բայց երբ երկրորդ հարկում ապրող, տրամվայի վագոնավար քեռի Վարդանը պատշգամբից գոչում է, թե մեր վեճերը երբեք վերջ չեն ունենա, քանի դեռ վիճում ենք առանց իրար հասկանալու, մտքումս համաձայնում եմ նրա հետ:

...Հորեղբայրս երկրաբան է: Շատ լավ երկրաբան: Ես էլ եմ ուզում երկրաբան դառնալ և այս ցանկությունը վերջերս եմ զգացել: Հենց դրա համար էլ հորեղբորս խնդրեցի, որ ինձ դպրոցական նստարանից նախապատրաստի մեծ ու կարևոր հայտնագործությունների: Նա ինձ երկրաբանական թանգարան տարավ և ծանոթացրեց այն հանքանմուշների և ապարների հետ, որոնք շարված էին ապակեպատ սեղանների վրա: Հորեղբայրս ինձ ասում էր, թե դրանցից որը ինչպես է կոչվում: Չեմ ուզում ձեզ հոգնեցնել անունները թվարկելով, քանի որ դրանք բոլորովին անծանոթ ու խրթին բաներ են, և դուք, միևնույն է, չեք հիշի: Հիմա ես էլ չեմ հիշում:

— Իսկ սա երկնաքար է,— ասաց հորեղբայրս:— Դու լսե՞լ ես երկնաքարերի մասին:

— Լսել եմ: Երբ երկնքից քար է ընկնում, ասում են երկնաքար,— անմիջապես պատասխանեցի ես:

Հորեղբայրս ծիծաղեց:

— Ոչ թե երկնքից, այլ՝ տիեզերքից: Ոչ թե քար, այլ՝ մետաղ կամ մետաղների զանազան միացություններ,— ասաց նա:

Մի խոսքով, նա երկար պատմեց «տիեզերքից եկած հյուրերի» մասին: Պատմեց Տունգուսական երկնաքարի մասին, որն ընկել է 1908 թվականի հունիսի 30-ին, պատմեց նաև Սիխոտե-Ալինյան երկնաքարի մասին, որն ընկել է 1947 թվականի փետրվարի 12-ին Հեռավոր Արևելքում: Հետո, երբ արդեն ուզում էի շնորհակալություն հայտնել ու հրաժեշտ տալ, հանկարծ գլխումս միտք ծագեց և ասացի.

— Հորեղբայր... ի՞նչ կլինի, այդ երկնաքարից մի փոքրիկ... շատ փոքրիկ կտոր...

Նա, իհարկե, նորից ծիծաղեց:

— Երկնաքարերը պետության սեփականությունն են,— ասաց նա:— Ես քեզ ոչ մի երկնաքար նվիրել չեմ կարող:

Երբ շատ համառեցի, ասաց.

— Ինձ մոտ մի քանի ավազահատիկի չափ երկնաքարեր կան: Քիմիական հետազոտություններից են մնացել: Եթե շատ ես ուզում՝ կտամ:

Նա բամբակի մեջ դրեց երկնաքարի փշրանքները, հետո բամբակն էլ դրեց լուցկու տուփի մեջ, և ես վազեցի տուն: Հենց այդ ժամանակ էր, որ բակում տեսա Լևոնին: Որոշեցի անցնել գնալ այնպես, որ չնկատի: Բայց նկատեց ու ձայն տվեց.

— Կարե՜ն...



Հետո վազեց իմ կողմն ու հարցրեց.

— Տուփի մեջ ի՞նչ կա,— ու քանի որ չպատասխանեցի, ծաղրեց.— Հա, թիթեռնիկ ես բռնել, որ նվիրես Լիլիթին:

Շատ բարկացա ու ասացի.

— Ոչ մի թիթեռնիկ: Սա...— և հազիվ զսպեցի, որ չասեմ: Ախր ես լավ եմ ճանաչում Լևոնին:

— Ուրեմն բզեզ է: Լիլիթը բզեզներ շատ է սիրում:

Ուզեցի նրան մի լավ հասցնել: Դեռ անցյալ ձմռանը, երբ հարբուխ էի ընկել և անընդհատ ֆսֆսացնում էի, ֆիզկուլտուրայի դասատուն հանկարծ ասաց. «Ինչու՞ ես բզեզի պես ֆսֆսացնում»: Ես, իհարկե, կյանքումս ֆսֆսացնող բզեզ չեմ տեսել, բայց անունը կպավ ու մնաց վրաս:

— Բզեզ չէ,— զայրույթս հազիվ զսպելով, ասացի ես:— Տուփի մեջ բամբակ կա, բամբակի մեջ էլ՝ երկնաքար:

— Փչե՜ց...

Անմիջապես հասկացա, որ Լևոնը իրեն տեղնուտեղը կորցրեց, որովհետև նման դեպքերում նա սիրում էր ասել. «Փչի՛ր, Գավրի՛լա, աշխարհի վերջն է»: Թատրոնում էր լսել: Եվ կրկնում էր անընդհատ: Լևոնն ուզում էր դերասան դառնալ:

— Տե՛ս,— բացեցի լուցկու տուփն, ու Լևոնի աչքերը փայլատակեցին: Ես անմիջապես վատ բան գուշակեցի:

— Իսկակա՞ն երկնաքար է:

— Իսկականից էլ իսկական:

— Փչե՜ց,— կրկնեց Լևոնը, բայց հետո կարողացավ գտնել իրեն, ձեռքերը խոթեց գրպանները ու երգելու պես ծոր տվեց.— Փչի՛ր, Գավրի՛լա, աշխարհի վերջն է:

— Հորեղբայրս է տվել:

Լևոնը լրջացավ: Հետո մտերմաբար նկատեց.

— Մենք ընկերնե՞ր ենք:

— Ասենք թե:

— Հիշու՞մ ես, որ դու առաջարկեցիր իմ կրիայի զրահից ջրի թաս պատրաստել և ես էլ ոչ մի վայրկյան չտատանվեցի:

— Ասենք թե:

— Դե որ այդպես է, երկնաքարերն ինձ տուր:

— Ինչու՞:

— Ես կմտածեմ, թե դրանցից ինչ կարելի է պատրաստել:

— Թող մնա ինձ մոտ, իսկ դու մտածի՛ր:

— Չի լինի: Եթե երկնաքարերն ինձ տաս, կոգևորվեմ, մուսաս կգա և մի լավ բան կմտածեմ:

Չեմ երկարացնի: Համոզեց:

Համոզեց ու վերցրեց:

Հաջորդ օրը վաղ առավոտյան բակ իջա: Ինձ նկատելուն պես Լևոնը չքվեց: Մինչև երեկո նրան գտնել չկարողացա: Սիրտս մի վատ բան էր վկայում: Նստեցի Լևոնենց շքամուտքի առաջ: Վերջ ի վերջո նա տուն պետք է գա: Դրսում հո չի՞ գիշերելու: Եվ, իսկապես, բակն արդեն խաղաղվել էր, և պատուհաններից շատերն էլ մթնել էին, երբ մի քանի քայլի վրա, գլուխը կախ, հայտնվեց Լևոնը:

— Երկնաքարը... Մտածեցի՞ր...

Լևոնը գլուխը շարժեց:

Ոչինչ չհասկացա:

— Ի՞նչ է պատահել,— զայրացա ես:

— Խնդրում եմ՝ հանգիստ,— ասաց Լևոնը.— Փորձանքն ամեն մարդու հետ էլ պատահում է: Չե՞ս հավատում: Ազնիվ խոսք, ինձ հետ պատահեց:

Պարզվեց, որ Լևոնը երկնաքարի հատիկները դրել է սեղանին ու ինքն էլ պառկել գահավորակի վրա: Նայել է հատիկներին ու մտածել: Նայել է ու մտածել: Եվ մուսան գալու պահին, մտել է քույրը, Նունեն անզգուշաբար սրբել է սեղանի երեսը, որպեսզի պարապի, և հատիկները գլորվել են ցած: Մի երկուսը անհետացել են հատակի ճեղքում, կարծեմ մեկն էլ ընկել է ֆիկուսի թաղարի մեջ:

Ուզեցի բարկանալ, բայց Լևոնը ձեռքերը խոթեց գրպանները և երգեցիկ տոնով, այնպես ինչպես վատ դերասանները, ասաց.

— Բարկությունը, սիրելիս, կարճատև խելագարություն է:

Առանց «բարի գիշեր» մաղթելու մենք բաժանվեցինք:

Բայց չկարծեք, որ սրանով էլ վերջացավ պատմությունը:

...Մի քանի օր մենք իրար արհամարհում էինք: Հանդիպելիս չէինք բարևում: Իսկ սեղանի թենիսի բակային մրցությունների ժամանակ իրար հետ խոսում էինք դատավորի միջնորդությամբ: Ես տանել չեմ կարողանում, երբ մարդիկ խռովում են, բայց եթե իմ տեղը դուք լինեիք՝ ինչպե՞ս կվարվեիք:

Հենց այդ օրերին էր, երբ հանկարծ կեսգիշերին հեռախոսը զանգահարեց: Ես արդեն քնել էի, իսկ հայրս, ըստ երևույթին, դեռ աշխատում էր, որովհետև, երբ նրա ձայնից արթնանալով՝ շտապեցի հեռախոսի մոտ, նրա առանձնասենյակում լույս էր վառվում:

— Լսում եմ,— ասացի, դժկամությամբ վերցնելով լսափողը, որովհետև համոզված էի, որ Արմենըն է ուզում խնդրի լուծումն իմանալ: Այսքան

ուշ ժամերի միայն Արմենն է զանգահարում ինձ։

— Դու՞ ես։

— Ես եմ։

— Գիտե՞ս... Չէի ուզում զանգահարել, բայց...

— Դե լավ, սպասիր տետրակս բերեմ,

— Ի՞նչ տետրակ։

— Թվաբանության։

— Սպասիր... Ախր, խոսքը թվաբանության մասին չէ... Այդ ես եմ... հասկանու՞մ ես... ես եմ՝ Լեվոնը։

— Ձեզ հետ խոսելու ցանկություն չունեմ,— չոր-չոր ասացի ես։

— Էլի սկսեց։

— Եվ խնդրում եմ այլևս չանհանգստացնել ինձ,— ասացի և ուզում էի լսափողը կախել, բայց չկարողացա զսպել հետաքրքրությունս։



— Լսիր, ախր, մի գյուտ եմ արել։

Չպատասխանեցի։

— Հիմա կարո՞ղ ես գալ մեր տուն։ Հե՛նց հիմա,

— Կմտածեմ։

— Չէ՛։ Անպայման արի, Չես փոշմանի։ Համ էլ կհաշտվենք։

— Կմտածեմ,— ասացի ու դրեցի լսափողը։ Այդպե՛ս, թող մի լավ դաս լինի նրան։

Հետո շտապ-շտապ հագնվեցի, հայրիկիս ասացի, որ գնում եմ Լևոնի նոր գյուտը տեսնելու։ Նա ոչինչ չասաց։ Երևի այնպես էր խորասուզվել իր աշխատանքի մեջ, որ չլսեց ասածս։

Բակում շատ մութ էր։ Ամբողջ շենքում բոլորն էլ արդեն քնել էին։ Միայն հատ ու կենտ պատուհաններում էր լույս վառվում։

Մի շնչով բարձրացա հինգերորդ հարկ ու սեղմեցի Լևոնենց դռան կոճակը։

— Այդպես էլ գիտեի, որ գալու ես,— ժպտաց Լևոնը։

— Որտե՞ղ է քո գյուտը։

— Հիմա,— ասաց Լևոնը և, ձեռքս բռնելով, կիսախավար միջանցքով տարավ իր սենյակը։

Սենյակում մութ էր։ Հենց որ ներս մտա, անկյունում նկատեցի տարօրինակ լույս արձակող ինչ-որ բան։ Հետո, երբ աչքերս վարժվեցին, գլխի ընկա, որ դա ծաղիկ է։

Ես կյանքումս այդքան տարօրինակ և լույս արձակող ծաղիկ չեմ տեսել, ոչ էլ լսել եմ, թե այդպիսի բան աշխարհում կա։ Ազնիվ խոսք,

Ծաղիկը աճել էր հենց ֆիկուսի թաղարի մեջ։ Երբ Լևոնը վառեց լույսը, սպասածիս հակառակ, ծաղիկը բոլորովին էլ չխամրեց։ Առաջվա պես պայծառ էր ու բազմերանգ շողեր էր արձակում։

— Ծաղիկին ֆոսֆո՞ր ես քսել,— հիասթափված գոչեցի ես։— Գյու՞տ է արել...

— Չէ՛, ազնիվ խոսք։ Չէ՛,— Լևոնի ձայնը հուզմունքից խզվեց։— Գիտե՞ս, կասկածներ ունեմ, որ... որ այս ծաղիկը երկնաքարից է ծլել։

— Կասկածնե՞ր ունեմ... Կասկածնե՞ր ունեմ,— չդիմանալով ծաղրեցի ես։— Ո՞վ է լսել, որ քարից ծաղիկ ծլի։

— Խելո՛ք։ Երկնաքարի մեջ կարող է սերմ եղած լինել,— Լևոնը խղճալու աստիճան հուզված էր։— Ես գրքում կարդացի։ Երկնաքարերը գուցե այլ մոլորակների բեկորներն են, որոնք տիեզերքը կտրել անցնելով, հասնում են մեզ։ Իսկ եթե մոլորակի բեկոր է, ապա այնտեղ սերմ էլ կարող է լինել։ Այս ծաղիկը ուրիշ աշխարհից է...— Լևոնը կարմրատակեց, շնչահեղձ էր լինում,— պատկերացնու՞մ ես, ախր...

Ես պատկերացրեցի ու նետվեցի դեպի ծաղիկը։

— Ի՞նչ ես անում,— գոչեց Լևոնը,

— Ծաղիկն իմն է։ Իմ երկնաքարից է ծլել։

— Ի՞նչ... Սրա՞ն տեսեք: Եթե ես չլինեի, որտեղի՞ց պետք է իմանայիր, որ...

— Իսկ դու գիտեի՞ր... Պատահաբար անել է և դու էլ իմացել ես: Ջուր տեղը չվինենք: Ծաղիկն ի՛մն է:

— Սրա՞ն տեսեք:

— Իսկ դու քեզ հայելու մեջ նայիր:

— Ֆսֆսան բզեզ...

— Ի՞նչ...

Հետո թե ինչ եղավ, նույնիսկ պատմելն ամոթ է:

Իսկ արդյունքն այն եղավ, որ ծաղիկը կորավ:

Երբ կռվի ժամանակ ծաղիկը զոհվեց, մենք անմիջապես սթափվեցինք: Ափսո՜ս, որ շատ ուշ սթափվեցինք:

Շատերը չհավատացին, երբ լսեցին մեր պատմությունը: Իսկ փաստ չունեինք, որովհետև հեռու-հեռու մոլորակից մեզ հասած ծաղիկը մինչև լույս արդեն հալվել, անէացել էր:

Ու մենք մինչև հիմա էլ կռվում ենք, թե ով է մեղավոր: Ես, իհարկե, անմիջապես կհամաձայնեմ Լևոնի հետ, եթե նա ընդունի, որ երկուսով էլ մեղավոր ենք: Բայց նա համառությամբ ամբողջ մեղքն ինձ վրա է միայն գցում: Եվ մենք վինում ենք: Վինում ենք ու վինում:

Եվ եթե Լևոնը ընդունի նաև, որ այդ ծաղիկը ո՛չ ինձ էր պատկանում, ո՛չ էլ իրեն, ես նորից կհամաձայնեմ:

Հիմա կասեք, թե ի՞նչ օգուտ: Եղածը՝ եղած է: Բայց երկրորդ հարկում ապրող տրամվայի վագոնավար քեռի Վարդանը մի անգամ ասաց, որ երբ ամենասարսափելի սխալի դեպքում մարդ հասկանում է և համոզվում, որ այդ սխալն այլևս չի կրկնելու, էլի մեծ բան է:

# ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Աշնան օրերը
Եկան ու անցան,
Զոր տերևները
Եղան ցիրուցան:
Արևն անվոր է,
Էլ չի շողշողում,

Ճերմակ ամպերից
Սառ ձյուն է մաղում:
Սպիտակ են հագել
Սար, անտառ ու լեռ,
Հեյ ջա՜ն, ինչ լա՜վ է,
Ձմեռ է...ձմե՜ռ...

Երեխաներ, ձեզանից շատերն են կարդացել «Լավվարի որսը» պոեմը, բայց երևի քչերը գիտեն, որ այդ հանրածանոթ պոեմի հեղինակը՝ բանաստեղծ Վահան Միրաքյանը, երեխաների համար շատ ուրիշ գործեր էլ է գրել, որոնք, սկսած 1887 թվականից, տպագրվել են «Աղբյուր» մանկական ամսագրում:

Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք Վահան Միրաքյանի անտիպ մանկական բանաստեղծություններից մի քանիսը, որ խմբագրությանն է տրամադրել բանասեր Լևոն Բատիկյանը,



## ԵՐԿՈՒ ԿԱՅԾ

Հեռու, կապույտ սարի լանջին
Դեռ մի կայծ է թույլ պսպղում.
Լուռ գիշեր է սառը, մթին.
Մերթ վառվում է, մերթ նվաղում:

Ամպերն ահեղ որոտում են,
Սարի գլխին շանթ էլ ընկավ.
Անձրև, կարկուտ խառնվում են,
Խավարի մեջ կայծն էլ հանգավ:

Բայց մի կայծ էլ կա իմ սրտում,
Մի նոր փայլով վառ բռնկած.
Ոչ մի շանթով նա չի հանգչում,
Անմար բոցով միշտ ինձ գրկած:

Նա այրում է, բայց և անուշ
Խոստանում է՝ հույս, հաշտություն.
Ճնշվածներին տալիս է ույժ,
Հաղթողներին՝ միշտ բերկրություն:

## ԾՈՎԻ ԵՎ ԻՄ ՍԵՐԸ

Ալիք ունես, ծով, անհամար,
Որ երգում են միշտ քեզ համար,
Ես էլ ունեմ քեզ պես ալիք՝
Մի Վահանիկ, մի Վարդանիկ:

Դու խաղում ես ալիքներով,
Ես խաղում եմ թոռնիկներով,
Դու ծեծում ես ալիքներին,
Ես ժպտում եմ թոռնիկներին:

Դու սիրում ես և բարկանում,
Իմ սերը դու չես հասկանում.
Ալիքներն են կռվում գիժ-գիժ,
Թոռնիկներս են խաղում կրծքիս:

Ալիքներն են փրփուր թափում,
Թոռնիկներս են ուրախ ժպտում.
Դու սեր ունես ծովի հզոր,
Ես սեր ունեմ ծովից էլ խոր..

## „ԵՂՆԻԿԻ ՓԵՐԻ" ԱՆՏԻՊ ՊՈԵՄԻՑ

Արևը գնաց, մարում է հեռվում,
Ամպերից հազար պատկեր է ձևում,
Ջուգում է. նախշում, զարդարում, ներկում...
Հանդում գերանդին էլ չի զրնգում:
Սարին ու դաշտին, հեռավոր հովտում
Էլ աշխատանքի ձայն չի որոտում:
Սուլեցին արդեն, հայտնելով իրար,
Որ դառնան գործից ձայնով ազդարար
Եվ տուն են դառնում իրիկնահացին.
Ամենքն էլ խումբ-խումբ երգում են դարձին.
Երգում են, մրցում օրվա գործերով,
Շնորհքն ու ձայներն իրենց փորձելով:

## ՀՆՁՎՈՐ. ԳԵՂՋՈՒԿՆԵՐԸ

Մենք ծեծել ենք գերանդին
Սուր գնդանին սրոցով.
Մենք շարվել ենք ժիր հանդին
Անուշ երգ ու սուլոցով:
Զնգզնգում է ամեն դին
Ջանգի նման գերանդին:
Սար ու ձորեր, դաշտերը
Մենք անցել ենք եռանդով.
Ջայիր-չիման խոտերը
Ողջ փռել ենք գերանդով:
Ոսկու նման մեր հանդին
Փայլփլել է գերանդին:







ՌԱԴԻԱՐԴ ԿԻՊԼԻՆԳ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

*Վաղուց, շատ վաղուց, սիրելի ընթերցող, ապրում էր մի նեոլիթ մարդ։ Նա ո՛չ յուտլանդացի էր և ո՛չ էլ անգլիացի. չնայած մեծ հավանականությամբ կարող էր լինել թե՛ մեկ, թե՛ մյուս ցեղից, բայց չարժե այդ մասին խոսել։ Նա նախամարդ էր, ապրում էր քարանձավում և հագնվում շատ թեթև։ Նա ո՛չ գրել գիտեր, ո՛չ էլ կարդալ և ցանկություն էլ չուներ սովորելու, միայն թե սոված չմնար։ Նրա անունը՝ Թեգումեյ Բոփսուլեյ էր, որը նշանակում է «հանդարտ մարդ», բայց մենք նրան կրճատ Թեգումեյ կկոչենք։ Նրա կնոջ անունը՝ Թեշումեյ Թևինդրոոս էր, որը նշանակում է «քիչ հարցեր տվող կին», բայց մենք, սիրելի ընթերցող, նրան Թեշումեյ կկոչենք։ Իսկ նրանց փոքրիկ դստրիկի անունը Թաֆֆիմեյ Մեթալումեյ էր, որը նշանակում է «ծեծի արժանի աղջիկ», բայց ես նրան Թաֆֆի կկոչեմ։ Նա իր հոր ու մոր դուստրն էր, և նրան ոչ ոք չէր ծեծում։ Եվ նրանք ապրում էին խաղաղ ու երջանիկ։ Երբ Թաֆֆին բավական մեծացավ, սկսեց ամեն տեղ գնալ հոր հետ։ Երբեմն հայր ու աղջիկ տուն չէին վերադառնում մինչև ուշ երեկո։ Թեշումեյը բարկանում էր.*

*— Տեր աստված, այդ ինչպե՞ս եք կեղտոտվել։ Ճիշտն ասած, Թեգումեյ, դու Թաֆֆիից ոչինչով չես տարբերվում։*

*Այժմ ուշադիր ինձ լսեք։*

*Մի օր հայր ու դուստր անցան կուղբերով լեցուն ճահճի կողքով և գնացին դեպի Վագեյ գետը՝ ճաշի համար ծածան որսալու։ Թեգումեյի տեգը փայտից էր, ծայրին ամրացված էր շնաձկան ատամ։ Նա դեռ չէր սկսել ձուկ որսալ, երբ հանկարծ տեգը մեջտեղից կոտրվեց և ընկավ ջրի մեջ։ Նրանք շատ հեռու էին իրենց տնից, (բայց փոքրիկ պայուսակով նախաճաշիկ էին վերցրել իրենց հետ), և Թեգումեյը մոռացել էր հետը ուրիշ տեգ վերցնել։*

*— Ա՛յ քեզ բան, — ասաց Թեգումեյը, — մինչև տեգս նորոգեմ, օրը ճաշ կլինի։*

*— Քո մեծ տեգը տանն է, — ասաց Թաֆֆին, — թող գնամ բերեմ։*

*— Դու դեռ շատ փոքր ես, — պատասխանեց հայրը, — ես քեզ չեմ թողնի գնաս, որովհետև կընկղնես կուղբերով լեցուն ճահիճն ու կխեղդվես։ Ես հիմա մի ճար կանեմ։ — Նա վերցրեց փոքրիկ կաշվե պայուսակը, որը լի էր հյուսիսային եղնիկի ջլերով, կաշվե երիզներով, մեղրամոմի շերտերով ու ռետինով, և սկսեց նորոգել տեգը։ Թաֆֆին նստեց գետափին՝ ոտքի ծայրերը ջրի մեջ կախած, ձեռքը ծնոտին հենած, ու խորասուզվեց մտքերի մեջ։ Հետո նա մտազբաղ ասաց.*

*— Լսի՛ր, հայրի՛կ, ի՜նչ ահավոր վիճակ. երկուսս էլ գրել չգիտենք։ Եթե գրել կարողանայինք, նամակ կուղարկեինք տուն, որ քո նոր տեգը բերեին։*

*— Քանի՜ անգամ եմ ասել, որ այդպիսի բառեր չօգտագործես, — ասաց Թեգումեյը, «ահավոր» բառը գեղեցիկ բառ չէ, բայց քո ասածը խելքի մոտ բան է։*

*Հենց այդ րոպեին մի անծանոթ մարդ էր մոտենում նրանց։ Նա թևարացի էր և մի բառ անգամ չէր հասկանում Թեգումեյի լեզվից։ Անծանոթը կանգնած նայում էր Թաֆֆիին և ժպտում, որովհետև Թաֆֆին նման էր իր փոքրիկ աղջկանը։ Թեգումեյը լուռ աշխատում էր։*

*Թևարացին նստեց խոտի վրա, իսկ Թաֆֆին սկսեց բացատրել նրան, թե ինչ էր անում իր հայրը։ Հետո ավելացրեց.*

*— Ես ուզում եմ, որ դու գնաս մայրիկիս մոտ, որովհետև քո ոտքերն իմից երկար են, և դու չես ընկնի կուղբերով լեցուն ճահիճը, ու բերես հայրիկիս սև բռնակով տեգը, որը կախված է օջախի վերևում։*

*Անծանոթը մտածում էր. «Այս հիանալի երեխան թափահարում է ձեռքերը, գոռում է վրաս, բայց ես մի բառ անգամ չեմ հասկանում նրա ասածից։ Եթե ես չկատարեմ նրա ուզածը, այդ մեծամիտ ցեղապետը կբարկանա»։ Եվ նա պոկեց կեչու ծառի կեղևն ու տվեց Թաֆֆիին։ Այդ նշանակում էր, որ իր սիրտն էլ այդ սպիտակ կեղևի նման մաքուր է։ Բայց Թաֆֆին չհասկացավ նրան։*

*— Դու մայրիկիս հասցե՞ն ես ուզում, — ասաց Թաֆֆին, — ես գրել չգիտեմ, բայց կարող եմ նկարել, եթե մի սուր բան լինի։ Խնդրում եմ, տուր ինձ վզնոցիդ շնաձկան ատամը։*

*Անծանոթը ոչինչ չասաց, իսկ Թաֆֆին երկարեց փոքրիկ ձեռքն ու պոկեց նրա վզնոցի շնաձկան ատամը։ Անծանոթը շատ զարմացավ. «Ինձ միշտ ասել են, որ եթե որևէ մեկն առանց իմ թույլտվության ձեռք տա այդ կախարդական ատամին, անմիջապես կուռչի ու կմեռնի։ Բայց այդպիսի բան չպատահեց։ Իսկ այդ լռակյաց ցեղապետը դեռ չի էլ նկատել ինձ»։*

*Թաֆֆին պառկեց փորի վրա և սկսեց նկարել՝ ոտքերն օդում շարժելով։*

—Ես արդեն սկսեցի նկարել,—ասաց Թաֆֆին,—եթե ուզում ես, նայիր ուսիս վրայից, բայց զգույշ, չհրես ինձ։ Սա հայրիկս է՝ ձուկ որսալիս։ Վա՜յ, հայրիկիս նման չստացվեց, բայց ոչինչ, մայրիկն իսկույն կճանաչի նրան, որովհետև սև բռնակով տեգը նրա կողքին է։ Այս ի՞նչ եղավ, տեգը հայրիկիս մեջքը խրվեց։ Ես մեղավոր չեմ, շնաձկան ատամը սահեց ձեռքիցս, և այդպես ստացվեց։ Սա էլ ես եմ, մազերս բիզ-բիզ, իսկ սա էլ դու ես։ Ճիշտ է, ես քեզ գեղեցիկ նկարել չկարողացա, բայց դու չպետք է վիրավորվես ինձնից։

Անծանոթը ժպտում էր ու մտածում. «Հավանաբար, ինչ-որ մի տեղ ճակատամարտ է տեղի ունենում, և այս խելացի փոքրիկն ինձ խնդրում է, որ իրենց ցեղի մարդկանց օգնության կանչեմ։

—Նայի՛ր,— ասաց Թաֆֆին մեծ դժվարությամբ բերելով կեղևը,—սև բռնակով տեգդ դնում եմ ձեռքիդ մեջ, որ նայելիս հիշես այն։ Սա էլ մեր տան ճանապարհն է, կգնաս ուղիղ, մինչև որ հասնես երկու ծառի (սրանք այդ ծառերն են), հետո կբարձրանաս բլուրը (սա էլ բլուրն է) ու

ես այս մեծ ցեղապետի մարդկանց օգնության չկանչեմ, նրան կպանեն տեգերով զինված թշնամիները։ Հիմա եմ հասկանում, թե ինչու նա ձևացրեց, որ չի նկատում ինձ։ Նա վախենում էր, որ թփերում թաքնված թշնամիները կտեսնեն մեզ իրար հետ խոսելիս։ Այդ է պատճառը, որ նա չշրջվեց, իսկ այդ խելացի աղջիկը նկարեց այս սարսափելի նկարը, որպեսզի ցույց տա հոր դժվարությունները։ Ես անմիջապես կգնամ և կկանչեմ նրա ցեղակիցներին»։ Նա քամու նման առաջ սլացավ՝ ձեռքին բռնած կեչու կեղևը, իսկ Թաֆֆին գոհ նստեց իր առաջվա դիրքով։

—Այդ ի՞նչ էիր անում, Թաֆֆի՛,—հարցրեց Թեգումեյը։ Նա արդեն նորոգել էր տեգը և այս ու այն կողմ էր շարժում։

—Հայրի՛կ, սիրելիս, եթե դու ինձ հարցեր չտաս, քիչ անց ամեն ինչ կիմանաս և շատ կզարմանաս։ Հայրի՛կ, խոստացի՛ր, որ կզարմանաս։

—Շատ լավ,—ասաց Թեգումեյը և սկսեց ձուկ որսալ։

Անծանոթը վազեց մի քանի մղոն, մինչև որ պատահաբար հանդիպեց Թեշումեյին՝ քարանձավի



կտեսնես կուղբերով լեցուն ճահիճը։ Սրանք էլ կուղբերի գլուխներն են, ճահճի մոտով անցնելիս դու միայն գլուխներ կտեսնես։ Զգույշ մնա, չընկնես մեջը։ Ճահիճը բլրակի նման բարձր չէ, բայց ես չեմ կարողանում ավելի փոքր նկարել։ Սա էլ իմ մայրիկն է դրսում կանգնած։ Նա աշխարհի ամենագեղեցիկ մայրիկն է, բայց նա ինձնից չի վիրավորվի, որ ես այդքան վատ եմ նկարել իրեն։ Տե՛ս, չմոռանաս, ես տեգը նկարել եմ դրսում, բայց այն ներսումն է։ Դու նկարը ցույց տուր մայրիկիս, և նա կհասկանա։ Ես նրան ձեռքերը մեկնած եմ նկարել, որովհետև շատ կուրախանա, երբ քեզ տեսնի։ Գեղեցիկ նկար է, չէ՞։ Լավ հասկացա՞ր, թե՞ նորից բացատրեմ։

Անծանոթը նայեց նկարին և գլխով արեց։ «Եթե

դռանը կանգնած։ Նա զրուցում էր մի խումբ Նեոլիթ կանանց հետ, որոնք եկել էին նրա մոտ Նախաճաշի։ Թաֆֆին շատ նման էր մորը, անծանոթը մեղմ ժպտաց և տվեց Թեշումեյին կեչու կեղևը։ Նա այնքան արագ էր վազել, որ քերծել էր ոտքերն ու հևում էր։

Հենց որ Թեշումեյը տեսավ նկարը, նա մի սոսկալի ճիչ արձակեց և հարձակվեց անծանոթի վրա։ Նեոլիթ կանայք անմիջապես ցած գլորեցին նրան և նստեցին վրան։ Թեշումեյը քաշում էր անծանոթի մազերն ու գոռում.

—Ամեն ինչ պա՜րզ է։ Նա իմ Թեգումեյին տեգերով խոցել է և խեղճ Թաֆֆիին այնպես է վախեցրել, որ մազերը բիզ-բիզ են կանգնել։ Բավական չէ այդ բոլորը, մեկ էլ այս սարսափելի

նկարն է ինձ բերել։ — Եվ նա նկարը ցույց տվեց իր ընկերուհիներին։

Նոուլիթ կանայք անծանոթի մազերի մեջ ցեխ լցրին և հնչեցրին թմբուկները։ Շուտով հավաքվեցին Թեգումեյի տոհմի բոլոր ցեղապետերն ու հետմանները։ Նրանք որոշեցին գլխատել անծանոթին, բայց նախ և առաջ նա պետք է ցույց տար, թե որտեղ էր թաքցրել Թաֆֆիին։

Անծանոթին այնքան էին չարչարել, որ նա ուժաթափ էր եղել։ Չնայած նա չէր հասկանում նրանց խոսածը, բայց համոզված էր, որ իրեն վտանգ է սպառնում։ Նա առաջնորդեց Թեգումեյի տոհմին դեպի Վագեյ գետը։ Թաֆֆին մարգարտածաղիկներից պսակ էր հյուսում, իսկ Թեգումեյն իր նորոգած տեգով ձաձան էր որսում։

— Վա՜յ, — զարմացավ Թաֆֆին, — ինչո՞ւ եք բոլորդ եկել։ Հայրի՛կ, սիրելիս, ահա իմ գաղտնիքը, զարմանում ես չէ՞։

— Շա՜տ, — պատասխանեց Թեգումեյը, — այսօր ձուկ որսալս ձախողվեց։ Բայց ինչո՞ւ է մեր ամբողջ տոհմն այստեղ հավաքվել։

Սկզբից քայլում էր անծանոթը Թեշումեյի և Նոուլիթ կանանց հետ։ Նրանցից հետո գալիս էր ցեղապետը, ապա նրա օգնականներն ու հետմանները իրենց ջոկատներով ու զորամասերով։ (Բոլորն էլ մինչև ատամները զինված էին)։

Թեշումեյը գրկեց և համբուրեց Թաֆֆիին։ Իսկ ցեղապետը բռնեց Թեգումեյի գլխի փետուրներից և ուժգին ցնցեց նրան։

— Բացատրի՛ր, — գոռացին այս ու այն կողմից։

— Աստծու սիրուն, թողե՛ք ինձ, — բարկացավ Թեգումեյը, — ես իրավունք չունե՞մ տեգս կոտրելու։

— Իսկ ո՞ւր են այն չար մարդիկ, որ քեզ տեգահարել են, սիրելիս, — հարցրեց Թեշումեյը։

— Ի՞նչ մարդիկ, — զարմացավ Թեգումեյը, — այս առավոտ իմ միակ այցելուն այս խեղճ մարդն էր, որին դուք ուզում եք սպանել։ Խելքներդ թռցրե՞լ եք, ինչ է։

— Նա ցույց տվեց մի սարսափելի նկար, որտեղ քեզ տեգահար էին արել, — բացատրեց ցեղապետը։

— Թողեք ես ասեմ, — բացականչեց Թաֆֆին, — ես եմ այդ նկարը տվել նրան։

— Դո՞ւ, — գոչեցին բոլորը միաբերան։

— Ծեծի արժանի աղջիկ։

— Թաֆֆի, սիրելիս, մենք գլխացավանքի մեջ ենք ընկել, — վախեցած ասաց Թեգումեյն ու գրկեց Թաֆֆիին։

— Դե շո՛ւտ բացատրություն տուր, — մի ոտքի վրա թռչկոտելով ասաց ցեղապետը։

— Ես ուզում էի, որ նա բերեր հայրիկիս սև կոթով տեգը, այդ պատճառով էլ երեք անգամ նկարեցի այն, որ մայրիկս հասկանա։ Ես նկարել եմ դեպի ճահիճ տանող ճանապարհն ու կուղբերի գլուխները, իսկ մայրիկը դրանց չար մարդիկ է անվանում։ Դուք աշխարհի ամենահիմար մարդիկն եք, ինչո՞ւ եք իմ գեղեցիկ անծանոթի գլխին ցեխ լցրել։ Շուտ լվացե՛ք նրան։

Երկար ժամանակ ոչ ոք ոչ մի ծպտուն չէր հանում։ Բայց երբ ցեղապետն սկսեց ծիծաղել, անծանոթն էլ հետևեց նրան, տոհմը երկար ժամանակ լիաթոք ծիծաղում էր։ Միայն Թեշումեյն ու Նոուլիթ կանայք չէին ծիծաղում և նրանք իրենց ամուսիններին «հիմար» անվանեցին։

Հանկարծ ցեղապետն սկսեց թռչկոտել ու երգել.

— Ծեծի արժանի աղջիկ, դու մեծ հայտնագործություն ես արել։

— Ես միայն ուզում էի, որ բերեն հայրիկիս սև կոթով տեգը, — ասաց Թաֆֆին։

— Ոչինչ էլ չես հասկանում։ Դու մեծ հայտնագործություն ես արել, և մի օր մարդիկ այն գիր կկոչեն։ Ներկայումս դրանք միայն նկարներ են, և ինչպես մենք տեսանք, նկարները ոչ միշտ են, որ հասկանալի են։ Բայց կգա ժամանակ, Թեգումեյի զավակ, մենք 26 հատ տառ կստեղծենք և ի վիճակի կլինենք մեր միտքն առանց սխալների արտահայտելու։ Թող Նոուլիթ կանայք լվանան անծանոթի գլուխը։

— Դուք այնքա՜ն շատ տեգեր եք բերել, բայց, ի՞նչ օգուտ, մոռացել եք հայրիկիս սև կոթով տեգը։

Ցեղապետը շարունակեց երգել։

— Թաֆֆի, սիրելիս, եթե ուրիշ անգամ դու նկարներով նամակ գրես, ավելի լավ է, ուղարկես այնպիսի մարդու հետ, որը կարողանա մեր լեզվով խոսել։ Ինձ համար դա ոչ մի նշանակություն չունի, որովհետև ես ցեղապետ եմ, բայց մեր տոհմի մարդկանց համար դա շատ կարևոր է։

Նրանք անծանոթին իրենց տոհմի մեջ վերցրին, որովհետև նա ազնիվ մարդ էր և աղմուկ չբարձրացրեց Նոուլիթ կանանց արածների համար։

Բայց մինչև օրս էլ (կարծում եմ, սա Թաֆֆիի մեղքն է) շատ քիչ փոքրիկ աղջիկներ կան, որ սիրում են գրել-կարդալ։ Նրանցից շատերը, Թաֆֆիի նման, գերադասում են խաղալ և կամ նկարել իրենց հայրիկների կողքին։

Անգլ. թարգմ. Ս. ՍԵՖԵՐՅԱՆ



# ՀԵՔԻԱԹ ԿԻՐԱԿԻ ՕՐՎԱ ՄԱՍԻՆ

*ԲԱԲԿԵՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

Փնթի Ժանը,
Մերուժանը,
Ծույլ Հակոբն
Ու Սերոբը
Հավաքվեցին
Ժամը վեցին
Բակի այգում,
Որոշեցին.
«Թող ամեն օր,
Ինչպես այսօր,
Լինի ազատ
Կիրակի օր...»
— Թե չէ, ի՞նչ է,—
Ասաց Ժանը,—
Կարծես քիչ է
Գործը տանը։
Առավոտը
Դեռ չբացված,
Հայրիկն արթուն
Ու լվացված՝
Շտապում է
Միշտ գործարան,
Սպասում են
Կարծես նրան...
Իսկ նա այսօր
Շուկա գնաց,
Բերեց խնձոր,
Սալոր ու տանձ։
— Դե, շուտ վե՛ր կաց
Ու վայելի՛ր,—
Ասաց պապան
Ինձ սիրալիր...
— Ճիշտ ես ասում,
Ժա՛ն, սիրելիս,
Երբ կիրակի
Օրն է գալիս,
Աշխարհն ասես
Լինի հանդես,
Խնդություն է
Գեղեցկատես։
Մամաս տանն է
Առավոտից,
Չի հեռանում
Նա իմ մոտից.
Տունն է մաքրում,
Ճաշ է եփում,
Ես պառկում եմ
Ու խռմփում...
— Չէ՛, կիրակին
Շատ լավ բան է,—
Ասաց ուրախ
Մերուժանը...—
Իմ մայրիկն էլ
Տանն է հիմա,
Չի շտապում
Նա ֆաբրիկա...
Տունն է մաքրում,
Ճաշ է եփում,
Ես պառկում եմ
Ու խռմփում...
— Գլխավորը
Դուք չեք ասում...
Գլուխ տարան՝
Դաս ու ուսում...
Որ ամեն օր
Լինի հանգիստ,
Կազատվենք մենք



Աշխատանքից։
Էլ ի՞նչ դպրոց,
Մանկապարտեզ,
Ի՞նչ դասագիրք,
Կամ ի՞նչ քարտեզ...
Ես «2»-ներ
Էլ չեմ բերի,
Մայրիկս էլ ինձ
Կհամբուրի,
Ու կանչելով
Հարևանին,
Կգովի իր
Խելոք Ժանին...
Հա՛, թող լինի
Կիրակի միշտ,
Որ մենք լինենք
Ուրախ, անվիշտ
Հակոբն ասաց,
Վճռական։
Լուռ էր սակայն
Մեր Սերոբը,
Մտածում էր
Լուրջ Քերոբը.
— Ա՛յ, անբաններ,—
Դարձավ Ժանին,
Մերուժանին
Մեր Սերոբը...—
Ի՞նչ եք նստել,
Ջուր եք ծեծում,
Թե՞ հեքիաթ եք
Կյանքը կարծում...
Ո՞վ է գործել
Կտորն հագիդ,
Ո՞վ է կարել
Կոշիկն հագիդ,
Ո՞վ է շինում
Հսկա շենքեր,
Ո՞վ է տպում
Գիրք ու թերթեր.
Ո՞վ է ցանում,
Ո՞վ է հնձում
Ցորեն-գարին,
Հաց պատրաստում...
Եթե լինի
Միշտ կիրակի,
Այս բոլորը



Էլ ո՞վ կանի...—
Խոսք չգտան
Այստեղ Ժանը,
Հակոբը ծույլ,
Մերուժանը...
Մտածեցին
Երկա՛ր, երկա՛ր...
Ու ասացին
Նրանք իրար.
— Թող կիրակին
Մնա կրկին
Իր հին տեղում...
Կյանքի ուղուց
Ո՛չ մի շեղում...
Թեկուզ աշխարհն
Ամբողջ լինի
Սռատության
Ծով անսահման,
Մարդը մարդ է
Աշխատանքով
Ու երջանիկ՝
Իր վաստակով։



# ՍՈՎՈՐԵՆՔ ԴԱՀՈՒԿՆԵՐՈՎ ՍՂՂԱԼ

*ՏԻԳՐԱՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ*

*Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

Ինչքա՜ն գեղեցիկ է շրջապատը ձմռանը։ Փորձեք դահուկներ հագնել և դուրս գալ քաղաքի կամ գյուղի սահմաններից։ Ձեզ ծանոթ ամառային բնանկարը այժմ բոլորովին այլ տեսք է ստանում։ Արևի պայծառ ճառագայթների տակ ձյունածածկ սարալանջերն ու հարթությունները, իրոք, հեքիաթային են թվում։ Ուզում ես ամեն ինչ մոռանալ, սլանալ այդ լանջերն ի վար, ընկերոջդ հետ մրցել հարթ տարածության վրա, ցատկել տրամպլինից։ Այո, գեղեցիկ ու հրապուրիչ է ձմեռը։

Առաջին ձյան հետ, փորձված դահուկորդի դահուկահետքերի կողքին տեսնում ես այնպիսի դահուկահետքեր, որոնք անհավասար են, ձողափայտերի տեղերը՝ անկանոն։ Պարզ է, այդ ճանապարհով անցել է սկսնակ դահուկորդը։

Այդպես է լինում միայն ձմեռային սեզոնի սկզբին։ Իսկ ձմռան վերջի՞ն։ Դահուկների վրա մի կերպ կանգնող սկսնակները սահում են արագ ու վստահ, դահուկահետքերը կանոնավոր են, քայլը՝ երկար, ձողափայտերի հարվածները՝ կտրուկ, ակնթարթային։ Մտքովդ անգամ չի անցնի, որ այս պատանին միայն վերջերս է կանգնել դահուկների վրա։

Դահուկային սպորտը ոչ միայն հանգստի լավ միջոց է, այլև կոփում է մարդուն, դարձնում ուժեղ, համարձակ, դիմացկուն, զարգացնում է մկանները։ Դահուկային զբոսանք պետք է կատարել փոքր հասակից, ինչքան հնարավոր է՝ հաճախ։ Չէ՞ որ ձմեռային մաքուր օդը մեծ չափով նպաստում է առողջության ամրապնդմանը։

## ՀԵՌԱՎՈՐ ԱՆՑՅԱԼԻՑ

Շատ հազարամյակներ առաջ լեռնային ցրտաշունչ վայրերում ապրող մարդիկ տարբեր եղանակներով էին կտրում անցնում ձյան խոր շերտով ծածկված տարածությունները։ Դեռևս մեր թվարկությունից առաջ, երբ Ալեքսանդր Մակեդոնացին նվաճում էր ասիական երկրները, նույն զինվորները զարմանքով էին նայում լեռնային շրջանների խոր ձյան միջով վստահորեն քայլող հայերին։ Հայերը ուռենու ճյուղերից խիտ կերպով գործում էին հատուկ «դահուկներ», որոնք ծղոտե պարաններով ամրացնում էին ոտքերին։ 13—17-րդ դարերում Եվրոպայի հյուսիսային շրջաններում ապրող սլավոնները, հատկապես զինվորներն ու որսորդները, նույնպես օգտագործում էին դահուկներ։ Այդ մասին են վկայում քարերի վրա փորագրված նկարները։

## ԵՐԲ ԴԱՀՈՒԿՆԵՐԸ ԳՆՎԱԾ ԵՆ

Եթե անցյալում դահուկները մեծ դժվարությամբ էին ձեռք բերվում, ապա այժմ, առաջին ձյան տեղալուց հետո, սպորտային ապրանքների խանութների մոտ կարելի է տեսնել բազմաթիվ ժպտացող տղաների ու աղջիկների՝ նոր գնած դահուկներով։ Ուրեմն, դահուկներ կան։ Բայց դրանով գործը չի վերջանում։ Դահուկների հետ ճիշտ վարվելու համար կան մի շարք կարևոր պահանջներ, որոնց մասին էլ ես ուզում եմ խոսել։ Լավ դահուկները պետք է լինեն ճկուն և շատ չչորացած։ Դահուկները պետք է 3—5 սանտիմետր կորություն ունենան (երբ դահուկը սահող մակերեսով դնում ես գետնի վրա)։ Դահուկները պետք է լավ ներծծված լինեն ձյութով։ Կարելի է ձեռք բերել սոսնձով ամրացված դահուկներ. դրանք ավելի ամուր են, քան մեկ ամբողջական փայտից պատրաստված դահուկները։ Դահուկները պատրաստվում են փայտից (ամենալավերը կեչու փայտից պատրաստվածներն են), այլև մետաղից, պլաստմասսայից։ Հաճախ փայտյա դահուկները

երեսպատվում են պլաստմասսայի շերտով։ Փայտից պատրաստված ծողափայտերը ճկուն են, իսկ մետաղից պատրաստվածները՝ ավելի ամուր։ Լեռնային տեղանքի համար խորհուրդ կտայի ձեռք բերել մետաղե ծողափայտեր։

Իսկ ինչպե՞ս ընտրել դահուկներն ու ծողափայտերը՝ ըստ հասակի։ Դա արվում է այսպես։ Դահուկները պետք է կանգնեցնել կողքին, ձեռքը վեր բարձրացնել և մատներով ազատ կերպով բռնել դահուկի ծայրը։ Բայց, հաշվի առնելով 9—13 տարեկան երեխաների արագ աճը, կարելի է գնել ցույց տված չափից 5—15 սանտիմետր ավելի երկար դահուկներ։ Ձողափայտերը հարմար կլինեն այն դեպքում, եթե կարողանաք թևատակերով հենվել դրանց վրա։ Եթե ձեռք եք բերել կոշտ (մետաղյա ամրակապերով) դահուկներ, ապա դրանք պետք է հագնել միայն կոշիկներով, իսկ թաղիքե մույկերի համար հարկավոր են փափուկ ամրակապերով դահուկներ։ Հայաստանի պայմաններում, որտեղ ռելյեֆը գերազանցապես կտրտված է, ցանկալի են միայն կոշտ ամրակապերը։ Դահուկներով սահելու գործում կոշիկները շատ կարևոր նշանակություն ունեն, բայց չմոռանաք ձեռք բերել ձեր ոտքի չափսից մեկ համար մեծ կոշիկներ։

Այժմ մի քանի խոսք պատանիների և աղջիկների դահուկային կոստյումի մասին (տես № 1 նկարը)։ Ցանկալի է բրդից գործված օձիքավոր վերնաշապիկ, որն ընդունակ է ավելի շատ կլանել մարմնից արտադրվող գոլորշին և տաք պահել։ Լավ կլինի վերնաշապկի տակից հագնել երկար թևերով տրիկոտաժե մայկա, քանի որ հաճախ բամի չեղած ժամանակ հարկ է լինում վերնաշապիկը հանել, իսկ երկար թևերով մայկան մարմինը պաշտպանում է արևահարությունից, հատկապես ծովի մակերևույթից 1500 մետր և ավելի բարձրությունների վրա։ Ամենից հարմար է հագնել խավ չունեցող բրդյա կտորից շալվար, որի վրայից ձյունը արագ թափվում է։ Շալվարը մինչև ծնկները պետք է փաթաթված լինի, իսկ ծնկներից վեր՝ ազատ։ Լավ կլինի ծածկել բրդյա թեթև գլխարկ։ Զբոսանքից հետո հարկավոր է հագնել տաք բաճկոն կամ կիսավերարկու։ Լեռնային վայրերում արևի ճառագայթներից պաշտպանվելու համար խորհուրդ է տրվում կրել մուգ ակնոցներ՝ կանաչ և բաց կանաչ ապակիներով։ Պետք է խուսափել շագանակագույն և սև ապակիներ ունեցող ակնոցներից, եթե դրանք հատկապես չեն հանձնարարված բժշկի կողմից։ Պետք է հագնել բրդյա նուրբ ձեռնոցներ կամ բարակ աստառ ունեցող կաշվե ձեռնոցներ։



Լավ կլինի, որպեսզի դահուկային կոշիկը ներծծված լինի որսորդական քսուքով կամ ձեր պատրաստած քսուքով՝ 100 գրամ պարաֆին, 10 գրամ մոմ, 100 գրամ ձյութ կամ տեխնիկական վազելին։ Քսուքի ներծծումը պետք է կատարել մի քանի անգամ արևի տակ։



## ՍԵՓԱԿԱՆ ՁԵՌՔԵՐՈՎ

Դահուկների վրա գտնվող ամրակապերը պետք է հարմարեցնել կոշիկներին, որոնցով դուք պետք է ամբողջ ձմեռվա ընթացքում մարզվեք, դուրս գաք արշավների ու զբոսանքների։ Սեպեր ունեցող կոշտ ամրակապերը պետք է հարմարեցնել զգույշ, որպեսզի կոշկատակի վրա ավելորդ անցքեր չլինեն։ Որոշելով ամրակապի տեղադրման տեղը, մատիտով նշում կատարեք և մի ձեռքով պահելով ամրակապը, մյուսով կոշիկն իջեցրեք դահուկի վրա այնպես, որ կրունկը նստի կենտրոնում։ Դանդաղ սեղմելով կոշիկը, նշեք սեպերի տեղը։ Դրանից հետո ամրակապը երեք պտուտակներով ամրացրեք դահուկներին (փորձնական), ապա մեկ անգամ էլ փորձեք կոշիկի դիրքը, հանեք կոշիկը և ամրակապը բոլոր պտուտակներով ամրացրեք դահուկին։

Հայաստանի պայմաններում ես խորհուրդ կտայի ընտրել «Ունիվերսալ» լայն դահուկները՝ մինչև 15 մետր բարձրությունից ցատկելու, արշավների և զբոսանքների համար, և «Ստանդարտ» վազքադահուկները։ Եթե դահուկները շատ քիպ ամրացված լինեն ոտքերին, ապա նրանցով սահելը և վայրէջքներ կատարելը ավելի կհաշտանան (տես №2 նկարը)։

# ՓՈՔՐԻԿ ՀԵՔԻԱԹ-ՆԵՐ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՄԻԼՈՇԱ ՄԱՑՈՒՐԵԿԱ

## Ֆլամինգո

Անտիլոպան վազվզում է սափաննայում։ Սկյուռը մի ծառից մյուսն է թռչում։ Միայն ֆլամինգոն է, որ ամբողջ օրը մնում է ջրի մեջ կանգնած և բոլորովին չի շարժվում։ Ջրի մեջ նա այնպես է կանգնում մի ոտքի վրա, որ կարծես երկրորդ ոտքը նրան պետք չէ։ Իսկ երկրորդ ոտքը մը-տածում է. Էլ ինչու՞ եմ ես աշ-խարհում ապրում։ Մի՞թե ես իրա-վունք չունեմ գոնե մի փոքր շարժ-վելու։ Ախր, ես այնուամենայնիվ ոտք եմ։



Եվ հենց որ ֆլամինգոն քնեց, երկրորդ ոտքը որոշեց թողնել ու հեռանալ, գնալ, ուր աչքը կտրում է՝ աշխարհ տեսնելու։ Ա՛յ թե բան ստացվեց հա՜... առաջ ոտքը լաստանավի վրա ձող դարձավ, հետո՝ գործված քաղենի խանութում մետրա-չափ, հետո՝ պտտաձող, և վերջապես՝ հեռուստացույցի անտենա։ Հեռուստացույցի անտենան ամեն բան տեսնում է, տեսնում է նաև ֆլամինգոյին, որ դեռ կանգնած է մի ոտքի վրա և չի էլ նկատում, որ երկրորդ ոտքը չկա։

## Գորտը

Երեխաները միշտ էլ անհանգստություն են պատ-ճառում։ Ծնվում է, օրինակ մի փոքրիկ գորտ։ Հայ-րիկն ու մայրիկը ուզում են, որ նա լավ հագնված լինի։ Գնում են խանութ և ուզում են մի շատ սիրուն թիկնոց առնել։ Բայց արի ու տես, որ փոքրիկին այդ թիկնոցը դուր չի գալիս։ Նա ուզում է ինչ-որ տարօրինակ կոճակներով կապույտ բաճկոն ունենալ։ Հայրիկն ասում է նրան.

— Մի քիչ համակացող եղիր, բոլոր գորտերն էլ կանաչ թիկնոց են հագնում։

Իսկ փոքրիկը ձայնը գլուխն է գցում.

— Ի՞նչ եք ինձ հեքիաթներ պատմում։ Երկնքում նույնիսկ ամպի կտոր չկա, իսկ ես հիմարի պես պի-տի թիկնո՞ց հագնեմ։

Մայրիկը զայրանում է.

— Լսիր, թիկնոցը մի... էլ պետք է։ Հանկարծ որ անձրև գա, ի՞նչ պիտի անես։ Մի քիչ հարկավոր է սեփական քթից այն կողմ ես տեսնել։

Այդպես թիկնոցն առան, բայց փոքրիկն այդ օր-վանից սկսեց համառություն անել։ Փողոց է դուրս գալիս միայն այն ժամանակ, երբ անձրև է գալիս։ Ուղղակի հոգի է հանում։

— Նստիր տանը. հեղեղի նման անձրև է գալու,— ասում է հայրիկը։

— Էլ ինչու՞ թիկնոց գնեցիք ինձ համար,— պա-տասխանում է փոքրիկն ու գնում զբոսնելու։



Եվ ամեն անգամ, երբ նրան տեսնում են փողոցում, մարդիկ ասում են.

— Փոքրիկ գորտը նո-րից զբոսանքի է գնում։ Երևում է, որ անձրև պիտի գա։

## Բադակտուցը

Դուք երևի գիտեք, որ բադակտուցը փոքրիկ կաթնասուն կենդանի է, որ ապրում է Ավստրալիայում, բայց չգիտեք, թե ինչու նա բերանի փոխարեն բադի կտուց ունի։

Կար ժամանակ, որ բադակտուցն էլ կատվի նման սովորական բերան ուներ և ինչ-որ ուզում՝ ուտում էր։ Նա հատկապես ձմերուկ էր սիրում և ահա մի օր չուզեց ձմերուկի համար վճարել։ Մտավ նա խա-նութ ու, հենց այնպես, առանց փողի մի ձմերուկ վերցրեց և «ամեն ինչ կարգին է» ասաց ու գնաց։

Բայց խանութպանը բոլորովին էլ կույր չէր և վազեց նրա հետևից։ Բադակտուցն էլ, «հոպ», նստեց տաքսի։ Իսկ տաքսին դատարկ չէր, այնտեղ նստած էր բադը, որը վերադառնում էր օպերետից, ուր նա գլխավոր դերն էր կատարում։ Բադակտուցը նստեց նրա կողքին, ձմերուկը դրեց պայուսակի մեջ ու ասաց. «Ամեն ինչ կարգին է»։ Պատահաբար նա ետ նայեց և տեսավ, որ գործերը վատ են, հետևից մի ուրիշ տաքսի է գալիս, մեջն էլ՝ խանութպանը։ Տեսնելով, որ ուրիշ ճար չկա, դիմում է նա բադին.



— Եկեք փոխանակություն կատարենք։ Ես ձեզ կտամ իմ բերան, իսկ դուք ինձ՝ ձեր կտուցը։— Այսպես բերանը կտուցի հետ փոխանակելով, նա հանգիստ դուրս է գալիս մեքենայից, իսկ խանութպանը նրան տեսնելով՝ ասում է.

— Ներեցեք, ես նկսի, սխալվել եմ։

— Խնդրեմ,— ասում է բադակտուցն ու «ամեն ինչ կարգին է» ասելով՝ գնում է տուն։

Եկավ տուն և ուզեց ձմերուկն ուտել, բայց կտուցով ձմերո՞ւկ կուտվի։ Կտուցով միայն ճիճու են ուտում, իսկ բադակտուցը ճիճու չի սիրում, նույնիսկ տանել չի կարող։ Բայց հո սովից չէ՞ր մեռնի. ստիպված սկսում է ճիճվի համն էլ տեսնել ու մինչև հիմա էլ նա ճիճու է ուտում։ Ի՞նչ արած, ստիպված է իր արարքի համար հատուցել։

# Կրիան

Ե՛վ ընձուղտը, և՛ կատուն, մի խոսքով, բոլոր գազանները էլ ականջ ունեն... Միայն կրիան ականջ չունի։ Իհարկե, նա էլ կարող էր ականջ ունենալ, նա էլ կարող էր մնացած գազանների նման կարգին տեսք ունենալ, բայց որպես գաղտնիք ձեզ ասեմ, որ դրա համար ինքը կրիան է մեղավոր։ Նա երգեցողություն չէր սիրում. և ահա տեսնո՞ւմ եք, թե ինչ կարող է պատահել մեկի հետ, որն ամբողջ կյանքում փնթփնթում է։

Բանն այսպես պատահեց։ Կրիան մի թռչնակի հետ ապրում էր մի սենյակում։ Այդ թռչնակն էլ մյուս բոլոր թռչունների նման սիրում էր երգել, երբ առաջին անգամ գարուն են տեսնում։

Թռչնակն առավոտից-իրիկուն երգում էր, իսկ կրիան սիրում էր քնել։ Եվ ու՞ր պիտի շտապեր, նա կարող էր թեկուզ հարյուր տարի քնել։ Հայտնի է, որ կրիաները շատ երկար են ապրում։ Եվ կրիան չէր շտապում, ոչինչ նրան չէր հուզում, միայն թռչնակն էր նրա ջղերի վրա ազդում։

Սկզբում կրիան մտածում էր. «Մի քանի տարի կհամբերեմ, հո թռչնակը չի՞ կարող անվերջ երգել, իսկ հաջորդ հարյուրամյակին հանգիստ կապրեմ, իմ բախտից ես կրիա եմ»։ Բայց տասնյոթ տարի հետո նա այլևս չկարողացավ դիմանալ և կատվին հրավիրեց ընթրիքի։ Իսկ, ինչպես գիտեք, կատուները թռչնի միս սիրում են։

Կատուն եկավ։ Նա քաղցած էր, բայց իրեն շատ քաղաքավարի էր պահում և ասում էր.

— Ի՜նչ լավ է ձեզ մոտ, ի՜նչ հարմարավետ է, ի՜նչ հիանալի տեսարան է երևում այստեղից, ինձ շատ դուր է գալիս այստեղ։

Իսկ թռչնակը շարունակում էր երգել, այնպես ինչպես երգում են բոլոր թռչունները, երբ տասնյոթերորդ անգամ գարուն են տեսնում։ Եվ ինչո՞ւ պիտի նա չերգեր, չէ՞ որ կատուն իր հյուրը չէր։

Կրիան կատվին խոստացել էր հյուրասիրել թռչնի մսով, իհարկե, եթե նա գործի կդներ իր թաթերը (հո չե՞նք կարող ասել ձեռքերը)։ Բայց, երևակայեք, որ կատուն ծույլ էր։ Նա ասաց.

— Իմ ամբողջ կյանքում ես այնքան թռչուն եմ կերել, որ նրանք հիմա էլ իմ ստամոքսում երգում են, ահա լսեցեք։

Կրիան այստեղ իրեն վատ զգաց։ Այդքան երգ միանգամից լսե՞լ կլինի, նա ուզում էր հանգիստ լինել։ Հուսահատված նա մոտավ լողարան և կտրեց իր ականջները։ Վերջապես լռություն տիրեց, նա այլևս ոչինչ չէր լսում։ Իսկ ականջները նստել էին լվացարանի տակ և սպասում էին, թե հետո ինչ է լինելու։ Իսկ կատուն վաղուց կրիայի ականջ չէր կերել։ Կրիայի ականջ ուտել նույնիսկ մարդիկ են սիրում։

— Հիանալի ընթրիք կլինեն այս ականջները,—



ասաց կատուն,—շնորհակալությո՛ւն։

Կրիան չէր պատասխանում և այդ ոչ թե նրա համար, որ անքաղաքավարի էր, այլ որովհետև առանց ականջի ոչինչ չէր լսում։

Ահա և ամբողջ պատմությունը։

Ռ. ՌՈԲԵՐՏ ՄՈՒԹԱՖՅԱՆԻ




Վ. ՉԱՊԼԻՆԱ

Խորհրդակցությունն արդեն ավարտվել էր, բայց բոլորը դեռ չէին ցրվել։ Ինչպես միշտ, ինչ-որ բան դեռ լիովին պարզ չէր, թերի, չասված հարցեր էին մնացել, և վիճաբանությունը շարունակվում էր։ Հիմնականում խոսքն այն մասին էր, թե կենդանիների համար շինությունները չեն բավարարում, վանդակները խիտ են, եղածն էլ՝ քիչ։ Վիճաբանությանը վերջ տվեց կենդանաբանական այգու գիտական բաժնի վարիչ Պյոտր Ալեքսանդրովիչը։ Նրա վճիռը պարզ էր և խիստ՝ արգելել այնպիսի կենդանիների ընդունումը, որոնցից բավական շատ կան գազանանոցում, այսինքն՝ արջերի, գայլերի, աղվեսների։

Այդ առաջարկությանը բոլորն անմիջապես հավանություն տվին։ Բայց դեռ չէին լռել աշխատակիցները, որոնք երդվում էին այլևս ոչ մի ավելորդ գազան չընդունել, երբ առանձնասենյակի դուռը բացվեց և ներս մտավ մի մարդ։ Նա կապկպված պարկը դրեց գետնին և, ճակատի քրտինքը սրբելով, ասաց.

— Ղազախստանից գայլի ձագեր եմ բերել նվեր։

Այս ասելով, որսորդը կռացավ և սկսեց արձակել պարկի կապերը։ Նա դեռ չէր հասցրել բացել պարկի բերանը, որ վնգստոց և ճանկռտոց լսվեց, և երկու գորշ մռութներ դուրս ցցվեցին պարկի միջից։ Նրանք սկսեցին եռանդով լիզել մարդու ձեռքը իրենց վարդագույն լեզվով։

Պարզապես հնարավոր չէր այդպիսի գազանիկներին գազանանոց չընդունել։

Գայլուկներին տեղավորեցին մի ոչ մեծ վանդակում, որը գտնվում էր բակում։ Ճիշտ է վանդակը նեղվածք էր, բայց փոքրիկները դրանից չէին տուժում։ Երբ զբոսանքի էին ելնում, նրանք վազվզում էին ու խաղում շան քոթոթների պես։ Նրանք այնքան սիրալիր էին, որ դժվար էր կարծել, թե գայլի ձագեր են։ Բավական էր, որ կռանայի ու «Քութի, քութի» կանչեի, նրանք անմիջապես կթողնեին իրենց խաղն ու կվազեին ինձ մոտ, ամեն կերպ աշխատելով լիզել դեմքս։

Աշնանամուտին ձագուկները բավականին մեծացել ու բոյ էին քաշել։ Ձմռանը ծածկվեցին փափուկ բրդով ու նմանվեցին իսկական գայլերի։ Արուին կոչեցին Կասկիր, իսկ էգին՝ Կասկիրկա։

Երրորդ ձմռանը նրանք խիստ գեղեցկացան։ Այժմ արդեն իսկական ուժեղ գազաններ էին։

Գայլերն այնքան հնազանդ էին և այնպես լավ էին պահում իրենց, որ նրանց սկսեցին տանել դասախոսությունների։ Այդ դասախոսությունները գազանանոցը անց էր կացնում դպրոցներում, ակումբներում, գործարաններում...

Երբ դասախոսը պատմում էր այն մասին, թե ինչ վնասներ է հասցնում այդ գիշատիչը, գայլը բացում էր երախը և ցույց տալիս իր հսկայական, սուր ժանիքները։

Երբ դասախոսությունից հետո Կասկիրին բերում էին գազանանոց և տանում իր տեղը, Կասկիրկան դիմավորում էր նրան բուռն ուրախությամբ։ Գայլերը շատ համերաշխ էին և շատ էին տխրում, երբ մենակ էին մնում։

Հաճախ ուսումնասիրելով գայլերին ու նրանց կապվածությունը մարդկանց, ես մտածում էի, իսկ եթե այդպիսի ճեռնասուն, մարդկանց մեջ մեծացած գայլին ազատ արձակես, նա կփախչի՞ արդյոք։

Այդ մասին մենք նույնիսկ վիճում էինք։ Բայց մեր վեճը լուծեցին գայլերն իրենք։

Մի անգամ պիոներական ճամբարից զանգահարեցին գազանանոց և խնդրեցին գազաններից որևէ մեկին տանել ճամբարի բացմանը։

Որոշեցինք տանել Կասկիրին։ Լյոնյան պիտի նրան ցույց տար երեխաներին, իսկ ես՝ պատմեի նրա կյանքը գազանանոցում։

Կասկիրին տանում էինք մարդատար ավտոմեքենայով։ Լյոնյան նստեց առջևը՝ շոֆերի մոտ, իսկ ես՝ Կասկիրի հետ հետևի նստատեղին։ Քանի դեռ մեքենան գնում էր քաղաքի փողոցներով, Կասկիրը հանգիստ էր և նայում էր պատուհանից։ Բայց ահա դուրս եկանք Մոսկվայից։

Անցնում ենք անտառների, դաշտերի, պուրակների միջով... Գայլն սկսեց անհանգստանալ։ Այժմ նա

հեռացավ իճծաճից, գլուխը կպցրեց պպակուճ և սկսեց քթով ճեղք որոճել. Ճա այճպես ծաճր էր շճչում, որ ես խղճացի ճրաճ, բացեցի պատուհաճը. Կասկիրճ աճմիջապես գլուխը դուրս հաճեց և ըսկըսեց հոտոտել օդը:

Նա քիչ-քիչ ավելի էր դուրս հաճում գլուխը. ես ուզեցի ճզել Կասկիրի վզկապը, բայց ճա առաջ ճզվեց և մեքեճայի ուժեղ ընթացքի ժամաճակ մի ոստյուճով դուրս ճետվեց պատուհաճից։ Դա այճպես աճսպասելի եղաճակով եղավ, որ ես աճմիջապես չհասկացա, թե ինչ տեղի ուճեցավ։ Հետո ուշքի գալով, գոռացի.

— Կաճգճեցրե՛ք մեքեճաճ։

Արգելակճերճ աղմկեցիճ։ Մեքեճաճ կաճգճեց, ես ու Լյոճյաճ դուրս թռաճք մեքեճայից ու քայլեցիճք այճ կողմը, ուր փախել էր Կասկիրը։ Նա կաճգճել էր ճամփեզրիճ ու դիտում էր շուրջը։ Հետո սթափվեց և մի տեսակ աճվճռակաճորեճ շարժվեց դեպի աճտառը։

— Կասկի՛ր, Կասկի՛ր. — հեռվից կաճչում էր Լյոճյաճ համոզված, որ գայլը կլսի իր ձայճը և ետ կգա։ Ես էլ չէի կասկածում։

Բայց Կասկիրը փոխաճակ մոտեճալու կամ գոճե կաճգ առճելու, արագացրեց քայլերը ու չքացավ ծառերի մեջ:

Մեճք աճտառ վազեցիճք գրեթե ճրա հետևից, սակայճ ճա արդեճ չկար:

Իզուր վազվզում ու ձայճ էիճք տալիս, գայլը չքացել էր։ Դեռ երկար փճտրեցիճք ճրաճ աճտառում, բայց իզուր։ Այժմ մեզ մճում էր շուտ վերադառճալ գազաճաճոց և հայտճել պատահարի մասիճ:

Այդ գ[illegible]ր գազաճաճոցի աշխատողճերից շատերը տուճ չգճացիճ։ Պյոտր Ալեքսաճդրովիչը ճույճպես տուճ չըգճաց և ճա միակճ էր, որ կարծում էր, թե գայլը կգտճվի։

Մեճք գրասեճյակում ճստած սպասում էիճք լուսաբացիճ: Առավոտյաճ աճտառում պետք է շուրջկալ արվեր։ Բոլորճ էլ ափսոսում էիճ այդ գազաճիճ և միաժամաճակ հասկաճում, որ ծեռճասուճ գայլը հատկապես ավելի վտաճգավոր է ազատությաճ մեջ։ Չէ՞ որ ճա ըճտելացել է մարդկաճց, ոչճչից չի վախեճում, և ով գիտե, թե իճչպես կվարվի ճա։

Այստեղ մեր մտորումճերճ ըճդհատեց պահակը: Նա հուզված ճերս ըճկավ:

— Շու՛տ, շու՛տ, այստեղ գազաճ կա,—շճչակտուր հայտճեց ճա։

Մեճք վեր թռաճք ու վազեցիճք պահակի հետևից։

Ճաճապարհիճ ճա պատմեց, թե գազաճաճոցի դարբասճերի մոտ ճկատել է մի գազաճի, բայց ճա այճպես արագ է սլացել, որ չի հասցրել լավ ճայել։ Հետո պահակը իճչ-որ վճգստոց է լսել գազաճաճոցի բակում, երևի այճտեղ որևէ բաճ է պատահել։

Մեճք ճետվեցիճք դեպի բակը։ Պյոտր Ալեքսաճդրովիչը թափով բացեց դարբասը և... բոլորս զարմացած կաճգ առաճք։ Այճտեղ, իր վաճդակի մոտ հաճգիստ պառկած էր փախստականը։ Այո՛, դա Կասկիրճ էր, այճ ճույճ Կասկիրը, որիճ ուզում էիճք բռճել շուրջկալով։

— Կասկի՛ր,— կաճչեց Պյոտր Ալեքսաճդրովիչը։



Գայլը շրջվեց և ուրախությամբ ճետվեց Պյոտր Ալեքսաճդրովիչի կողմը։ Նա քըսմըսվում էր, լիզում մեր դեմքը... Իսկ երբ Լյոճյաճ բացեց վաճդակի դուռը, ճա վազեց այճտեղ և ճույճքաճ ջերմ ողջուճեց Կասկիրկայիճ։

Իսկ մեճք ճայում էիճք և զարմաճում, որքաճ մեծ է եղել ճրա կապվածությունը մարդուճ, որ ստիպել է գայլիճ վերադառճալ իր վաճդակը, մի գիշերվա մեջ կտրել 60 կիլոմետր, աճցճել ամբողջ Մոսկվաճ՝ իր «տուճը» գտճելու համար։

*Թարգմ. Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ*

*Նկ. ԱՇՈՏ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

# ՄԻՐԶԱ ՖԱԹԱԼԻ ԱԽՈՒՆԴՈՎ



Փոքր Կովկասյան լեռների լանջերին է գտնվում Նուխա քաղաքը: Նուխայի կենտրոնում, կուլտուրայի նորակառույց պալատի դիմաց մի հոյակապ հուշարձան է վեր խոյանում: Դա Միրզա Ֆաթալի Ախունդովի արձանն է: Բոլորը, ովքեր անցնում են հրապարակով, մի պահ կանգ են առնում և երախտագիտությամբ ու հիացմունքով նայում ադրբեջանական ժողովրդի մեծ զավակին:

Նուխայի հարավ-արևելյան մասում, Գուրջանչայ գետի ափին հիմա էլ մի փոքրիկ, ոչնչով աչքի չընկնող տնակ կա: Սակայն թե՛ նուխացիները, թե՛ եկվորները սրտի մի առանձին դողով են մոտենում այդ տնակին, ուր ծընվել ու մեծացել է մեծ գրողը:

Հենց այստեղ, Նուխայում էլ փոքրիկ Ֆաթալին գնաց դպրոց, բայց դա հոգևորական դպրոց էր, և գիտնականների հետ նրան սովորում էին կրոնական թույնը, աշխատում էին մթագնել պատանու ուղեղը: Սակայն դպրոցում առաջադեմ ուսուցիչներ կային, որոնք հեռու էին պահում Ֆաթալիին կրոնի վնասակար ազդեցությունից: Նրանցից մեկը՝ Սեյիդ Ազիմը, որը Ֆաթալու մոր ազգականն էր, միշտ ասում էր. «Եթե ուզում ես իսկական մարդ դառնալ, կրոնից հեռու փախիր»: Փոքրիկ Ֆաթալին շատ ընդունակ էր, նա մայրենի ադրբեջաներենից բացի, սովորեց նաև պարսկերեն ու արաբերեն, իսկ հետագայում ավարտելով տեղի ռուսական դպրոցը, ինքը սկսեց դասավանդել ռուսերեն:

Ախունդովի ստեղծագործական կյանքը սկսեց ծավալվել, երբ նա տեղափոխվեց Թբիլիսի: Այստեղ նա ծանոթացավ ռուս, հայ, վրացի առաջավոր մարդկանց հետ, մտերմացավ Խաչատուր Աբովյանին, որի հետ 1837—1840 թվականներին աշխատում էր Թբիլիսիի գավառական դպրոցում:

Հետագայում նա անցնում է պետական ծառայության, դառնալով կովկասի փոխարքայի թարգմանիչը՝ փոխգնդապետի աստիճանով: Սակայն ո՛չ պետական ծառայությունը, ո՛չ ուսուցչությունը չեն խանգարում, որ նա զբաղվի գրականությամբ, ծառայի իր հարազատ ժողովրդի կուլտուրային: Նրա գրական գործունեությունը սկըսվեց 1837 թվականին գրված «Արևելյան պոեմ Ա. Ս. Պուշկինի մահվան առթիվ» գործով, որը այն ժամանակ մի համարձակ քայլ էր Ախունդովի կողմից: 1850—1855 թվականներին նա վեց կատակերգություն է գրում, որոնցով սկիզբ է դնում Ադրբեջանական դրամատուրգիային: Բացի այդ, նա գրում է նաև մի շարք այլ գործեր, որոնցում արտացոլվում են նրա գեղագիտական և փիլիսոփայական հայացքները: Ախունդովի գործերը սըկսում են հրատարակվել ռուսերեն և ադրբեջաներեն, իսկ հետագայում նաև լույս են տեսնում Անգլիայում, Բելգիայում, Ֆրանսիայում և մի շարք այլ երկրներում:



Ախունդովի մեծությունը կայանում է նրանում, որ նա երգում էր ազա-


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 4
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 02277. Պատվեր 1509. Տպաքանակ՝ 7850. Տպագրական 5 մամուլ: Ստորագրված տպագրության 1 XI 1962 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91.*

Գինը 20 կ.

# Օրացույց

տությունը, պայքարում էր աշխատավոր մարդու իրավունքների համար, երգում էր ժողովուրդների բարեկամությունը: Նա միշտ մոտիկ էր կանգնած ժողովրդին, գիտեր նրա ցավերն ու կարիքները, գիտեր, թե ի՛նչ է երազում, ի՛նչ է ուզում աշխատավոր մարդը և ամեն ինչ անում էր այդ ժողովրդի բարօրության համար: Իր նամակներից մեկում Ախունդովը գրում էր. «Ես այն միամիտներից չեմ, որ սուրս զցեմ թշնամու առաջ և անձնատուր լինեմ նրան: Քանի որ շունչ ունեմ, մինչև մահ գրչով կմարտնչեմ Պոլիսի վեզիրների դեմ»:

Ախունդովը մեծ էր նաև նրանով, որ նա միշտ կանգնեց իր ժամանակաշրջանի առաջավոր գաղափարների դիրքերում, միշտ քարոզեց մարդասիրություն, եղբայրություն, մտածեց ապագայի մասին, հավատաց այդ ապագային:

Նա գտնում էր, որ երիտասարդությունը կարող է հասնել երջանիկ ապագային, եթե միայն ճիշտ տարվի նրա դաստիարակությունը, եթե նա հեռու մնա մոլություններից ու սիրի աշխատանքը, որը սրբագործում է մարդուն: Նա միշտ խարազանում է աշխատանքից խուսափող, անբան մարդկանց, ինչպիսիք են նրա հերոսներից Հայդարբեկը և Սաֆարբեկը, և սրանց է հակադրում աշխատասեր, արդար քրտինքով ապրող մարդկանց՝ Մկրտիչին ու Առաքելին:

Լինելով իր ժողովրդի հարազատ զավակը, Միրզա Ֆաթալի Ախունդովը մինչև իր կյանքի վերջը ծառայեց ադրբեջանական ժողովրդին և իր ստեղծագործություններով հարստացրեց համաշխարհային գրականությունը:

Այդ է պատճառը, որ այս տարի Խաղաղության համաշխարհային կոմիտեի որոշմամբ աշխարհի բոլոր երկրներում տոնեցին մեծ մարդասերի, գրողի և մտածողի ծննդյան 150 տարին:

*Ի. ՄԱՄԵԴՈՎ*

## Ս. ՅԱ. ՄԱՐՇԱԿ

Ավելի քան վաթսուն տարի առաջ էր: Ռուս նշանավոր արվեստաբան Վլադիմիր Ստասովի ամառանոցում հյուրեր էին հավաքվել: Այդտեղ էին նկարիչ Ռեպինն ու գրող Գորկին, երգիչ Շալյապինն ու կոմպոզիտոր Գլազունովը: Ռուսական արվեստի այս չորս տիտանների կողքին նստել էր նաև տասներեքամյա մի տղա: Պատանին նույնպես հրավիրված էր...

Ստասովը շատ հետաքրքրասեր մարդ էր. նա ոչ միայն առիթներ էր ստեղծում ծանոթանալու ժամանակի նշանավոր մարդկանց հետ, այլև որոնում ու գտնում կամ ինչպես ինքն էր ասում «հայտնաբերում» էր նորանոր տաղանդներ: Այդ օրը նա նոր գրող էր «հայտնաբերել», պատանի Սամուիլին: Երբ Ռեպինը, Գորկին, Շալյապինը և Գլազունովը մտան հյուրասենյակ, Սամուիլը հուզված սկսեց մի ոտանավոր արտասանել: Ստասովը որոշել էր



անվանի հյուրերին ընդունել հատուկ հարգանքով և պատանի բանաստեղծին պատվիրել էր մեծարանքի մի ոտանավոր գրել:

— Լավ ես արտասանում,— նկատեց Գորկին,— իսկ ո՞վ է հեղինակը, գուցե ճանաչված բանաստե՞ղծ է:

Պատանին շիկնեց:

— Ինքն է հորինել,— ժպտալով միջամտեց Ստասովը և ապա ավելացրեց.— Ալեքսեյ Մաքսիմովիչ, ես նրա մեջ մեծ ապագա եմ տեսնում...

Պատանին այսօրվա նշանավոր բանաստեղծ Սամուիլ Յակովլևիչ Մարշակն էր:

Ստասովի ու Գորկու հետ ունեցած հանդիպումներն ու նրանց ջերմ հոգատարությունը վճռական նշանակություն ունեցան Մարշակի կյանքում: Նա հավատաց իր ուժերին և իր ամբողջ ուշադրությունը դարձրեց դեպի ժողովրդական բանահյուսությունը, դեպի Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի պոեզիան: Սովորելու անհագ ցանկությունը նրան դարձրեց համառ ու աշխատասեր: Երբ տեսավ, որ բարձրագույն կրթություն ստանալ չի կարող ցարական Ռուսաստանում, Գորկու խորհրդով Մարշակը մեկնեց Անգլիա և ընդունվեց Լոնդոնի համալսարանը: 1914 թվականին վերադառնալով հայրենիք, նա ամբողջովին նվիրվեց գրականությանը:

Մարշակը բազմակողմանի ստեղծագործող է: Բայց նա իր եռանդի ու ժամանակի մեծ մասը հատկացրել է մանկական գրականությանը: Ռուս և եղբայրական մյուս ժողովուրդների երեխաները ամենավաղ տարիքից անգիր գիտեն նրա գողտրիկ բանաստեղծությունները: Մեծ համբավ ունեն Մարշակի դրամատիկական ստեղծագործությունները, որոնք գրված են մանկական թատրոնների համար: Հապա ծույլերի, վախկոտների ու մեծամիտների մասին գրած երգիծական ոտանավորնե՞րը: Մարշակը երեխաների մեջ հետաքրքրություն է ստեղծում դեպի շրջապատող իրականությունը և պատրաստ է պատմել ամեն ինչի մասին. «Որտեղի՞ց է եկել ձեր սեղանը», «Ինչպե՞ս է տպագրվել ձեր գիրքը», «Որտե՞ղ ճաշեց ճնճղուկը», «Թե ինչպես խոզը խոզ դարձավ» և այլն:

Մարշակի գրքերը տարածված են մեր հայրենիքի բոլոր վայրերում: Դրանք սիրով կարդում են թե՛ ռուս, թե՛ մյուս ազգերի երեխաները: Մարշակի ստեղծագործությունները թարգմանված են նաև օտար լեզուներով:

Մարշակը մեծ ծառայություն է մատուցել ռուս գրականությանը նաև որպես թարգմանիչ: Շեքսպիրի, Ջաննի Ռոդարիի և այլ նշանավոր գրողների գործերը ռուս ընթերցողները կարդում են Մարշակի գեղեցիկ թարգմանությամբ:

Լրացավ Ս. Յա. Մարշակի ծննդյան 75 տարին:

*Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*





# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է 1963 ԹՎԱԿԱՆԻ ԹԵՐԹԵՐԻ ԵՎ ԱՄՍԱԳՐԵՐԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Քո ծնողները, ավագ եղբայրներն ու քույրերը հավանական է վաղուց արդեն բաժանորդագրվել են իրենց հետաքրքրող թերթերին ու ամսագրերին։

Իսկ դո՞ւ, սիրելի դպրոցական, բաժանորդագրվե՞լ ես «Պիոներ» ամսագրին։ Եթե զանազան պատճառներով դեռ չես բաժանորդագրվել, շտապի՛ր։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ**

12 ամիսը — 2 ռ. 40 կ.
9 ամիսը — 1 ռ. 80 կ.
6 ամիսը — 1 ռ. 20 կ.
3 ամիսը — 60 կ.

Եթե ուզում ես ամեն ամիս ստանալ քո պատկերազարդ ամսագիրը, կարդալ քո սիրելի գրողների պատմվածքները, բանաստեղծությունները ու հեքիաթները, գիտության և տեխնիկայի մասին տպագրվող գրույցները, լուծել «Ժամանցի» հետաքրքրաշարժ խնդիրները ու առաջարկները, «Պիոներ»-ին բաժանորդագրվիր մեկ տարով։

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ